# ԽՈՍՐՈՎՈՒ

## ԱՆՁԵՒԱՑԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

## ԱՂՕԹԻՑ ՊԱՏԱՐԱԳԻՆ







Ի ՏՊԱԳՐԱՏԱՆ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ
Ի Ս. ՂԱԶԱՐ ՎԵՆԵՏԿՈՅ

1869

ՔԵԶ

ՀԱՅՐ ԱՄԵՆԱՐԺԱՆ

ՆԱՀԱՊԵՏ ՈՒԽՏԻՍ ՄԽԻԹԱՐԱՅ

# ԳԷՈՐԳ ՎԱՐԴԱՊԵՏ ՀԻՒՐՄԻՒԶ

ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՍԻՒՆԵԱՑ

Ի ՆԱՒԱԿԱՏԻՍ

ՅՈԲԵԼԻՆԻ ՔԱՀԱՆԱՅԱԳՈՐԾՈՒԹԵԱՆԴ

ԶՊԱՏԱՐԱԳԱՄԵԿՆԻՉՍ

## ԽՈՍՐՈՎՈՒ ԱՆՁԵՒԱՑԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԶՕՆԵՆ ՆՈՒԷՐ ԱՐԳԱԴԻՐ

ՍԻՐՈՅ ԵՒ ԵՐԱԽՏԵԱՑ

ՀԱՄԱԿՐՕՆՔ ՎԱՆԻՑ Ս. ՂԱԶԱՐՈՒ

ՔՈ ՈՐԴԻՔ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Զաղօթս և զօրհնս մեծի խորհրդոյ սրբոյ պատարագին՝ յարմարեալ կանոնեցին մեզ երանելի և ամենայն գովութեանց արժանաւոր թարգմանիչք մեր, որպէս և զայլս ամենայն կարգս աղօթից և պաշտամանց եկեղեցւոյ. յորս՝ և որ յետ նոցա կացին առաջնորդք հոգածուք՝ արարին յաւելուածս ըստ ժամանակին պիտոյից. իսկ այլք ՚ի նոցին համազգահոգեկիր և ճշմարտասէր արանց՝ փոյթ կալան զառ՚ի յառաջնոցն հաստատեալս յեկեղեցւոյ պաշտամանս, աղօթս և ընթերցուածս՝ պարզաբանել և հասու առնել պաշտօնէիցն և ժողովրդեան առ հասարակ. որպէս զի հոգւով և մտօք եղիցի աղերս եկեղեցւոյն առ Աստուած, և մի բանիւ լոկով։ Գիտանեգոյն քան զամենայն գրոց և պաշտամանց՝ աներկբայապէս Պատարագին էր բացատրութիւն, ըստ գերազանցութեան այնր խորհրդոյ քան զայլսն. զոր թէ գրեաց ոք ՚ի նախագունից անտի հարց մերոց՝ յետ Յովհաննու Մանդակունւոյ յարդարողի գրոցն՝ մինչև ցհինգ եւս դար, ոչ է մեզ ծանօթ. զի թէպէտ զեկեղեցւոյ և զկար-

դայ նորին, նա և զժամասացութեանց ոմանց ոչ սա-
կաւ զ[illegible]անիրն մեկնողական բանք յառաջնոց անտի,
բայց ոտնով ինչ զպատարագի աղօթից ոչ գտանեմք
ցկէս տասներորդի դարու, յորում Խոսրով եպիսկոպոս
Անձևացեաց՝ գրեաց զհրատարակեալս այժմ առ 'ի
մէնջ. հաւանագոյն ևս թուի կարծել գրեալ 'ի նախ-
նեաց և անյայտ մնալ, քան չգրելն. քանզի և սորին
իսկ Խոսրովու գրածն յետ երկերիւրոց և տասնեկաց
ինչ ամաց՝ թուի զանխուլ մնացեալ 'ի Ներսիսէ Լամ-
բրոնացւոյ, որ մեծաւ խնամով որոնէր և գրէր զնոյն
խորհրդոյ, և որ լուծմունս իսկ արար զգրոց Ս. Գրի-
գորի Նարեկացւոյ զորդւոյն Խոսրովու, զորմէ մեր
բանս է:

Սա՝ զոր սակաւ մի որդւոյն իւր յիշէ և սակաւիկ
մի ևս այլք, երևի 'ի տոհմիկ տանէ ընծայեալ 'ի լոյս
կենաց, 'ի սկիզբն կոյս Ժ դարու, 'ի նոյն 'ի կողմանս՝
ուր ինքն և որդիք իւր քաղաքավարեցան. քանզի զա-
ռաջինն յաշխարհի կարգ մտեալ և առեալ կին ըզ-
դուստր հօրեղբօր Անանիայի Նարեկայ վանից վանա-
հօր՝ ծնաւ որդիս առաքինիս, զՍահակ, զՅովհաննէս
և զնախ յիշեալն Գրիգոր, յորոց երկոքին յետինքդ
աշակերտեցան առ ոտս Անանիայի՝ 'ի Նարեկ: Յետ՝
եթէ յառաջ քան զմահ ամուսնոյն՝ ոչ գիտեմ, բուռն
եհար Խոսրով զմիանձնական վարուց և զեկեղեցական
վիճակէ, և ամբարձաւ ցգահ եպիսկոպոսութեան
հռչակաւոր և մեծիշխան գաւառին Անձևացեաց, ուր
անդէն 'ի սկզբան քրիստոնէութեան հաստատեալ էր
Բարդուղիմէի առաքելոյ զհոգեաց վանս, որ աթոռ ե-
պիսկոպոսաց այնր կողման եղև յետոյ: Յառաջ քան
զհասարակել Ժ դարուն՝ կալ նորա եպիսկոպոս ան-
երկբայ է. զուցէ և յառաջ քան զյաջորդելն Անա-
նիայի յաթոռ Ս. Լուսաւորչին, որ է իբրև յամի 942:
Ի սմանէ ապստամբեաց ասեն պատմիչք մեր (Ուռպե-
լեան և Կիրակոս) եպիսկոպոսն Սիւնեաց Յակոբ. և

որպէս ամբաստանողք նորա ասէին առ կաթուղիկոսն, « և զԽոսրով՝ Անձևացեաց եպիսկոպոս՝ նա չեղեաց » թղթով՝ 'ի ձէնջ »: Երկիցս չոգաւ Հայրապետն 'ի Սիւնիս՝ հնազանդեցուցանել զեպիսկոպոս աշխարհին. յառաջնումն յաջողեցաւ, և յերկրորդումն (յամի 949) ոչ. քանզի խոյս տուեալ Յակոբայ 'ի բերդ ամուր՝ եկաց մնաց աննուաճելի ցմահ իւր, յամի 958: Ոչ յիշի և մերոյս Խոսրովու վերստին հնազանդելն, և թուի իսկ ոչ. այն զի սուղ ինչ յառաջ ժամանակաւ Գագկայ Արծրունւոյ հաստատեալ մեծաւ շքով զթագաւորութիւն տանն Վասպուրականի, կացուցեալ էր հաւանութեամբ և ձեռնադրութեամբ Գէորգեայ կաթուղիկոսի՝ գլուխ եպիսկոպոսաց աշխարհի իւրոյ՝ զԵղիսէ՝ Ռշտունեաց եպիսկոպոս յԱղթամար, որոյ յաջորդք ինքնագլուխ իսկ կաթուղիկոսք եղեն յետ ոչ բազմաց: Բայց պատճառք չեղելոյն Խոսրովու յԱնանիայէ՝ այլ ինչ են. Կիրակոս պատմիչ 'ի յիշել զապստամբելն Յակոբայ՝ յիշէ առ եւեթ և զԽոսրով ոմն եպիսկոպոս, առանց անուան աթոռոյն, և մնաս նմա կարգէ բաղդյս անհամաձայնս և աղցխփեղցս. այլ զի և ոչ քաջ որոշէ զերկոսին եպիսկոպոսունսն, նա մանաւանդ 'ի Յակոբէ գլխաւորէ զբանն և զդատ, սմա իսկ պատշաճագոյն երևի ասացեալ մեղադրութիւն: Սակայն գլխաւոր պատճառ օտարանալոյն 'ի Հայրապետէն՝ թուի այն զոր Սիւնեացն պատմիչ վասն իւրոյ եպիսկոպոսին ասէ, անընդմէջ յետ յիշելոյ զչեղումն Խոսրովու, եթէ « նա և հերձուածս ևս յօդէին, եթէ քաղաքոր» բեալ ունի և զՔաղկեդոնին ». հաւանագոյն է և մերոյս Խոսրովայ ունել, ոչ քաղաքորբեալ, որպէս ասէն, այլ քաջ բացաքօղեալ զայն, որ յստակագոյն ձանաչիւր յայնմ ժամանակի 'ի կողմանս Վասպուրական աշխարհի, ուր և յետ փոքր միոյ ապաստանեալ յաջորդն Անանիայի տէր Վահան, հալածեալն վասն բանի այնր հաւատոյ. և առ նովաւ համարի տակաւին կենդանի

գող Խոսրովու, և յետ մահուան նորուն և հակառակաթոռն Ստեփանոսի՝ վախճանել, յաւուրս աթոռակալութեան Խաչկայ, յամի 972։

Այսչափ զվարուց և զկենաց եպիսկոպոսին Անձաւացեաց. իսկ գործք նորա ծանօթք և մնայունք են Գիրք նորա Մեկնութեանցն Աղօթից եկեղեցւոյ մերոյ և պատարագին. որոց առաջինն ծանօթագոյն և վաղուրեմն տպագրութեամբ հրատարակեալ է 'ի Կ. Պօլիս յամին 1730, շարախառնելով 'ի բանս հեղինակին և զայլոց ոմանց հնագունից մերոց վարդապետաց բանս մեկնութեանց, երկասիրութեամբ Մովսիսի ուրումն վարդապետի հաւաքեալս։ Իսկ Պատարագամատուցին մեկնութիւն՝ այս առաջին անգամն է լոյս՝ տպագրական վերածնութեամբ. որոց վերծանեալ իցէ զառաջինն՝ հարթ հաւասար նմին գտցէն և զերկրորդս զայս, նովին յստակ տեսութեամբ և բառակարգութեամբ, նովին սեռն և ջերմեռանդն սրտիւ, նովին ախորժ և համոզկեր բանիւք. ոչ շռայլեալ 'ի խօսս և 'ի կշտամբանս, և ոչ հարևանցի շտապեալ։ Բայց զի ոչ ըստ այժմեան պատարագամատուցաց ունի և զսկիզբն խորհրդեանն և զմիջանկեալ աղօթսն ինչ կամ զքարոզութիւնս սարկաւագի, արարեալ է և այնց բանից մեկնութիւնս՝ այլոյ ուրումն՝ և յաւեալ 'ի կարգին, օժանդակելով 'ի Ներսիսէ Լամբրոնացւոյ և այլուստ, որպէս ունին նորագիր օրինակք. այլ ոչ գտանին 'ի հնումն՝ 'ի գրելում 'ի թուին ՉՁԵ (1336), զոր ընդագիր մեզ կալաք, և զոր Հին կամ Ա. Օ(րինակ) կոչեմք 'ի ծանօթութիւնս. որում գրեաթէ զուգընթանայ յամենայնի և յետնագիր օրինակ մեծի մատենադարանին Բարիզու. հանդերձ սոքօք են առ մեզ և այլ երկու նորագիր օրինակք, որք ունին զհատուածսն եկամուտս. զորս ոչ համարեցաք արժան 'ի բաց թողուլ 'ի մատենէս, այլ փոքրատառ ստորև դրոշմեցաք առ 'ի լրումն բացատրութեան բանիցն թողլոց կամ մուծե֊

լոյ յետ Խոսրովու, և առ 'ի հաճոյագոյն ևս ընծայել զայս վաստակ՝ սիրողացն զայսպիսիս: Իսկ փափագողացն ստուգագոյն ևս գիտելոյ զիմաստս համօրէն աղօթից և զկարգաց պատարագիս, առընթեր կացցեն խորհրդածութիւնք և մեկնութիւնք Ս. Ներսիսի Լամբրոնացւոյ, վաղագոյն տպագրեալք առ 'ի մէնջ (յամի 1847) ուրեք ուրեք կարևոր ծանօթաբանութեամբք, վասն աստուածաբանական ինչ խնդրոց. զոր օրինակ, կոչմանն Հոգւոյն սրբոյ 'ի սրբագործութեան նուիրացն, և նորին նմանեաց, յորս համաձայն գտանին երկոքին սոքա մեկնիչք. և մեր ոչ կամեցեալ զ'անդ միանգամ ասացեալն կրկնաբանել և աստանօր, յայն մատեան հրաւիրեմք զխուզակսն՝ երթալ, և զմեզ անբասիր կացուցանել:

Զպատճառ յօրինուածոյ գրոցս՝ ծանուցանէ ինքն իսկ հեղինակն 'ի վերջաբանին. զժամանակն՝ յայտ առնէ յիշատակարան որդւոյ նորուն՝ Գրիգորի, եթէ եղև յամի 950, և գրեցաւ նախ առաջին 'ի Սահակայ եղբօրէ իւրմէ. զի որպէս Թուի՝ հայրն Թելադրէր և որդին գրէր. յոր միտս կարծեմ և զՄխիթար Այրիվանեցի՝ յասելն, եթէ «Խոսրով Անձևացեաց եպիս-
» կոպոս արար զմեկնութիւն Աղօթամատուցին, զոր
» գրէր Սահակ որդի իւր»: Իսկ զգովութիւն գրոցն՝ ճարտար համառօտէ նոյն ինքն Գրիգոր, եթէ «Ի գրե-
» լոցդ (բանից Խոսրովու) լինիցին հասու խնդրողքն՝
» վասն նորա»․ և ինքն, 'ի ցաւ մեզ, առ խոնարհութեան՝ հրաժարէ 'ի ստուգաբան գովութենէ հօր իւրոյ: Եւ զի, որպէս կանխեցաք ասել, ոչ գտանեմք այլ ինչ յիշատակ զհեղինակէս, արդարև առաջին վկայ արդեանց նորին՝ միայն բանք իւր. և ըղձալի է առաւել ևս հաւատարմացուցանել զայս՝ այլովք ևս գրաւոր երկասիրութեամբք այնքանոյ կորովամիտ և արդարախոհ առն, զորս գոյ յուսալ առ 'ի նմանէն և ժտել 'ի ժամանակէն. երաշխաւոր համարելով մեզ և զՅայամ-

աւուրս՝ որ 'ի յիշատակի որդւոյ նորին Գրիգորի Նարեկացւոյ՝ կոչէն զԽոսրով «այր շնորհալի և բանի- » բուն »։ Այլ երկրորդ իմն աղեխուր գովութեան նմա գրեսցի՝ հայրութիւնն այնպիսւոյ սքանչելւոյ և հրեշտակակերպ զաւակի. որով համարձակիմ նմանեցուցանել զնոսա մեծացն Ներսիսի և Սահակայ, հրաշալի ծնողի և ծննդոյ, համգոյն որոց պատուեալ իսկ կոչի Մեծ և մեր Խոսրով. որ ոչ միայն արեան որդւոցն՝ այլ և հրեղէն սրտիցն երևի հնոց եղեալ, և առաջին դաստիարակ և թռուցիչ մարմնաքնար և հոգերգող ներանձնաւորին Նարեկայ։

# ԽՈՍՐՈՎՈՒ

# ԱՆՁԵՒԱՑԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

## ՍՐԲՈՑ ՊԱՏԱՐԱԳԻ



*Զինչ Աւետարանին և զՀաւատամքն ասելոյ՝ քարոզէ սարկաւագն*[1].

«Եւ ևս հաւատով աղաչեսցուք և խնդրեսցուք »յԱստուծոյ՝ 'ի Հօրէ և 'ի տեառնէ ամենակալէ, 'ի »վերայ ժամու պաշտաման և աղօթից. զի Աստուած »արժանի ընդունելութեան արասցէ»։

Ասացաք զև ևս թէ այլ է հաւատով աղաչեսցուք. զի հաւատքն առնէ լսելի, որպէս ասաց առաքեալն Յակոբոս. Եթէ ոք 'ի ձէնջ իցէ նուազեալ յիմաստութենէ, խնդրեսցէ յԱստուծոյ, որ տայ ամենայնի առատապէս և ոչ նախատէ, և տացէ նմա. բայց խըն-դրեսցէ հաւատովք, և մի երկմտութեամբ։ Զսոյն և 'ի Պօղոսէ խրատիմք, որ ասէ. Կամիմ զի արք կացցեն յաղօթս յամենայն տեղիս, համբառնայցեն զսուրբ ձեռս 'ի վեր, առանց բարկութեան և երկմտութեան. և ինքն իսկ Տէրն մեր զայս հաստատէ, այսպէս ասելով. Զամենայն ինչ վասն որոյ աղօթս արարեալ խըն-դրիցէք՝ և հաւատայցէք եթէ առնուցուք, եղիցի ձեզ։ Ընդէ՞ր երկուս դնէ թէ՝ աղաչեսցուք և խնդրեսցուք. ցուցանէ թէ մեծաւ պաղատանօք զխնդրուածն պարտ

1 Ձեռ. Օ. Քարոզ զկնի աւետարանին, և այլն։

է առնել, և սրտի մտօք եռանդնալից ջերմութեամբ աղաչել, ըստ խրատու մարգարէին. Փառեա՛ 'ի տեառնէ, և նա տացէ քեզ զամենայն խնդրուածս քո. կոչեաց և զԱստուած յերկուց անուանց և զերրորդն ևս յաւել.

« Խնդրեսցուք յԱստուծոյ 'ի Հօրէ և 'ի տեառնէ ա-
» մենակալէ ». ուսուցանելով գութ առ Աստուած և երկիւղ ունել, և 'ի գթութիւն և 'ի խնամածութիւն և 'ի պահպանութիւն զնա յուսով կոչել. զի Աստուած է արարիչ, հարկաւ հանդիպի, և 'ի ստեղծուածս խնամակալութիւն պահանջի. և զի հայր է ըստ աւազանին միւսանգամ 'ծննդեանն' 'ի գութ մեզ բորբոքի սիրով. և զի տէր է ամենակալ՝ զպահպանութիւն և զամենայն պիտոյս իբրև ծառայից շնորհել յանձն առնու: Վասն այսորիկ մեք որպէս 'ի հաստիչ և 'ի հայր՝ սերտ սիրով ապաւինեսցուք. և իբրև տեառն երկիւղիւ ծառայեսցուք, և զամենայն հոգս մեր 'ի նա ընկեսցուք, և ամենայնիւ 'ի նա յուսասցուք. զի թէ առ սակաւագութ մարդկութիւնս [1] վասն միոյ պատճառի հայրութեան կամ տէրութեան [2], վստահանամք զամենայն պիտոյից մերոց լրումն, ապա որչափ առաւել երիւքս այսոքիւք՝ առ բազմագութն այն Աստուած և հայր և տէր՝ պարտիմք մեծայոյս լինել: Միայն զարժանն ևեթ հատուսցուք նմա ըստ ամենայնի. զի արարածն զարարիչն պատուէ, և 'ի նորա սպաս և 'ի պաշտօն հարկի. և որդի զհայր փառաւոր առնէ, և ծառայ երկնչի 'ի տեառնէ իւրմէ: Այսպիսիք լեալք՝ ամենայնիւ 'ի նմանէ բարեգործիցիմք, և զաւետիս կենաց ունիցիմք զաստիս և զհանդերձելոցն. իսկ եթէ ընդ հակառակն յայնցանէ շրջիցիմք, հակառակքն և մեզ դիպիցին. և զայն լսեմք թէ՝ Զղջացայ, զի արարի զմարդն 'ի վերայ երկրի, և թէ՝ ահա ես ապականեցից զնոսա և զերկիր, և զոր մարգարէին տրտունջէր՝ Եթէ հայր եմ, ո՞ւր են փառք իմ, և եթէ տէր՝ ո՞ւր է երկիւղն իմ:

« Ի վերայ ժամուս պաշտաման և աղօթից. զի Աս-
» տուած ընդունելութեան արժանի արասցէ »: Վասն այսր, ասէ, ժամուս. զայնմ ժամանակէ ասէ՝ յորում

1 Այլ Օ. մարդասիրութիւնս: 2 Այլ Օ. տկարութեան:

ժամու յաղօթս ժողովեալ իցեմք. զոր պաշտօն և աղօթս կոչէ, յայտ առնելով եթէ պաշտօնեայք գոլով Աստուծոյ հօրն և ամենակալին տեառն, հանապազ 'ի նորա պաշտօնն ժամանել պարտիմք առանց հեղգութեան. և է պաշտելն ծառայութեան անուն։ Ոչ վայրապար զպաշտօնն և ապա զաղօթսն եդ՝ որ է խնդրուածս. այլ զի ուսցիս, թէ ծառայելով պարտ է խնդրել զպէտս. զի այսպէս և առ մարմնաւոր տեարս նախ ծառայել, և ապա խնդիրս առնել սովոր եմք։ Դարձեալ զի և ընդունելի պաշտօնն և աղօթքն լիցին՝ աղաչել խրատէ. այսինքն թէ զի որպէս հաճելին է՝ պաշտեմք զԱստուած, և որպէս նայն կամի՝ աղօթիցեմք, սրբութեամբ և սիրով և զգաստութեամբ և յստակ մտօք և ջերմ հոգւով. և զի խնդրիցեմք զօգտակարսն, զարքայութիւնն Աստուծոյ և զարդարութիւն նորա. զի որպէս ասէ առաքեալն Յովհաննէս՝ թէ Զոր ինչ հայցեմք ըստ կամաց նորա՝ լսէ մեզ. 'ի սոյն միտս և քարոզին գան բանք։

« Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց, ընկալցի » զխնդրուածս սրտից մերոց, ողորմեսցի 'ի վերայ մեր » ։ Քանզի այնպիսեացն սովոր է լսել՝ որք ըստ կամաց նորա հայցեն։ Դարձեալ ոչ ասաց, թէ ընկալցի զխնդրուածս մեր, այլ թէ զսրտից մերոց. զի ոչ եթէ որ 'ի շրթանցն՝ այլ որ 'ի սրտէն խնդրուածքն ընդունելի է նմա. որ և ողորմել մեզ տայ Աստուծոյ, որպէս և պոռնկին և քանանացւոյն, և որպէս կուրացն՝ որ զողորմութիւն խնդրելով ոչ լռէին, թէպէտ և բազումք սաստէին, մինչև լուսաւորեցան և գնացին զհետ նորա, ոչ թողլով զնա՝ թէպէտ և հասին պարգևին։ Զոր և մեք արասցուք. մի՛ լռեսցուք 'ի խնդրելն, թէպէտ և յոլովիւք խափանողօք արգելեալք լիցուք, և մի՛ յառնուլն զխնդրելին՝ 'ի նմանէ 'ի բաց կացցուք. թէ ոչ՝ և նա 'ի բաց [1] լինի 'ի մէնջ. և այնմ դիպիցիմք, զոր սաղմոսանուագն ասէ. Ահաւասիկ որք հեռի արարին զանձինս իւրեանց 'ի քէն՝ կորիցեն. այլ ըստ խրատու առաքելոյն՝ մերձեսցուք առ Աստուած և նա մերձեսցի առ մեզ։

1 Այլ Օ. 'ի բացեայ։

« Աղօթք մեր և խնդրուածք յամենայն ժամ մնասցեն » առաջի մեծի տէրութեան նորա »։ Թէ այնպէս աղօթեսցուք որպէս ասացաւ, և զհաճոյս Աստուծոյ և զօգուտն մեր խնդրեսցուք, ոչ այժմ և եթ այլ և յամենայն ժամու, աղօթք մեր և խնդրուածք մնասցեն առաջի մեծի տէրութեան նորա. ապա քանի՜ անչափ խնդութիւն մեզ գայցէ. զի եթէ 'ի փոքր տէրութենէս որ 'ի մարդիկ՝ յաճախ խնդութիւն լինի, զաղաչանս ուրուք ընկալեալ, ապա այնչափ մեծութեան երկնաւոր տեառնն ահաւորին հրեշտակաց՝ առաջի մտեալ մեր և զհայցումն 'ի նմանէ ընկալեալ[1], որպիսի՜ զուարճութիւն մեզ բերիցէ, որ և նախ քան զմեռ երանութիւնս աստ պարգևալից արասցէ, որպէս և ասէ.

« Եւ նա տացէ մեզ միաբան հաւատով յարգարու» թիւն վաստակել. զի զողորմութեան զշնորհս իւր ա» ռասցէ 'ի վերայ մեր տէրն ամենակալ »։

Տեսե՞ր զաղօթիցն շահ, որպիսի՜ եցոյց զմիաբանեալն յուղիղ հաւատս և զվաստակեալն յարդարութեան. և այս լինի յորժամ Տէրն ամենակալ զողորմութեան շնորհն իւր 'ի վերայ առնէ, այսինքն զՀոգւոյն սրբոյ շնորհս, զոր ողորմի և տայ խնդրողացն. այն է որ հաստատեն 'ի հաւատս. նոյն և որ յարդարութեան վաստակսն զօրացուցանէ. նա է որ զտաժանելիսն հեշտալիս առնէ։ Ապա յաղօթս աւարտէ զբանն ասելով, « Կեցո և ողորմեա մեզ, Տէր »։

## ԱՂՕԹՔ

« Տէր մեր և փրկիչ Յիսուս Քրիստոս, որ մեծդ ես » ողորմութեամբ և առատ ես պարգևօք բարերարու» թեան »։ Երկնից և երկրի գոլով տէր, ասեմք մեզ յատուկ, յառաւել գութ այնու ձգել. մանաւանդ զփրկիչն կարդալով մեզ, որոյ մարմնանալովն և մահուամբն փրկեցաք. բայց զի մեծ ասաց ողորմութեամբ՝ զանբաւ նորա յայտնելով զողորմութիւն, նոյնպէս և զառատութիւն նորա պարգևացն անչափաբար։ Բայց

[1] Այլ Օ. առաջի մտեալ մեր է հարցումն և 'ի նմանէ ընկալեալ։

զի՞նչ աստանօր կամի այս նախաշաւիղ աղօթիցս գոլ. քանզի յերրորդ ժամուն է աղօթքս, յորում ժամու 'ի խաչ հանեին զփրկիչն, և յորում ժամու Հոգին սուրբ տուաւ առաքելոցն. և 'ի խաչի համբերելն վասն բազում իւրոյ ողորմութեանն էր, զի զմեր մեղացն զպարտսն իւրով մարմնովն հատուցէ. Նոյնպէս և զմեծ պարգևսն՝ զՀոգին սուրբ՝ շնորհեց առատութեամբ, յորդ և անհուն բարերարութեամբ. յաղագս այնորիկ, ասէ, մեծդ ես ողորմութեամբ 'ի խաչին պատճառս. և առատ ես պարգևօք բարերարութեան, վասն զՀոգին հեղլոյ. որպէս յաջորդն իսկ յայտ առնէ.

« Որ դու քոյին կամաւ համբերեցեր 'ի ժամուս
» յայսմիկ՝ չարչարանաց, խաչի և մահու յաղագս մե-
» ղաց մերոց »: Ոչ 'ի բռնութենէ ասէ ուրուք, այլ 'ի կամաց քոց կրեցեր զամենայն, ողորմելով մեզ. ոչ ըղդուն առանց պատճառի դնէ նախկին, այլ սակաւուն բազում ընդ միտ ածել պատրաստէ. Թէ դու Աստուածդ և Որդիդ Աստուծոյ Հօր համագոյդ, արարիչդ ամենայնի, զոր անբաւ բազմութիւնք վերնոցն մեծաւ երկիւղիւ պաշտեն, յորոյ հրամանէ ծով սահմանեալ է և ցամաք հաստատեալ, որոյ բանիւ լուսաւորք 'ի հաստատութեան երկնի գնան ըստ իւրաքանչիւր կարգաց, յորոյ ձեռանէ կերակրին ամենայն կենդանեաց ազգ, որ ամենայնի տիրես և զամենայնն լնուս, և անբովանդակելիդ ես յամենեցունց, անհասդ և անճառդ և անիմանալիդ. համբերեցեր չարչարանաց, կապեալ, յատենի կացեալ, թշնամանեալ, թքալից եղեալ, ապտակեալ, կռփեալ, ձաղեալ, կատակեալ, փշեայ պսակօք և ծիրանեաց զգեստիւ, և եղեգնեայ գաւազանաւ գանեալ, երբեմն 'ի Պիղատոսէ մտրակաւ և երբեմն եղեգամբ 'ի զինուորացն: Զայս և որ սոցին նմանս ցուցանէ յասելն, թէ համբերեցեր չարչարանաց. յաւել առնէ ապա և զխաչին կիրսն, միով բանիւ ասէ զմերկութիւնն, զբևեռուածն, զծարաւն, զլեղւոյն ճաշակումն [1], զբազմաց հայհոյութիւնն և զնախատելն և զգլուխս շարժելն: Ապա և զմահն 'ի նոյն յարէ՝ այս-

[1] Այլ Օ. զլեղին զոր ճաշակեաց:

պէս ասելով. Քոյին կամաւ համբերեցեր 'ի ժամու յայսմիկ չարչարանաց և խաչի և մահու. յորում զխոցումն եառ՝ մեռելութեամբն ես թշնամանեալ. և թաղմամբն ընդ մեռեալս համարեալ. զայս ասէ զամենայն համբերեցեր վասն մեղաց մերոց. զի քոյին անպարտ արեամբդ զպարտաւորս ազատեսցես 'ի յաւիտենական մահուանէն և 'ի տանջանաց:

« Եւ պարգևեսցես առատապէս զպարգևս Հոգւոյդ » սրբոյ երանելի առաքելոցն »: Քանզի առ այնս որք արբեցութեամբ բամբասէին զառաքեալսն 'ի խօսել նոցա զամենայն լեզուս, ասէ Պետրոս. Ոչ որպէս դուք կարծէք թէ սոքա արբեալ իցեն, զի դեռ երեք ժամք են աւուրս. զայն և աղօթիցս բան յայտ առնէ, թէ 'ի այն յայս երրորդ ժամուս, յորում 'ի խաչին բևեռեցար, և զՀոգիդ սուրբ հեղեր յերանելի առաքեալսն: Իսկ առատապէսն՝ զառաւելութիւնն քան 'ի մարգարէսն յայտ առնէ, վասն որոյ երանելիս կոչէ. զի սաստիկ յորդութեամբ զէջս Հոգւոյն նոցա պարգևեաց: Յարէ 'ի նոյն և մաղթանս.

« Հաղորդս արա զմեզ, Տէր, աղաչեմք զքեզ աստուածային պարգևացդ »: Հաղորդս լինել՝ հաւասարորդ է լինել. աստուածային պարգև ասէ զոր 'ի Քրիստոսի չարչարանացն շնորհեցաւ մեղաց թողութիւն, և 'ի Հոգւոյն սրբոյ գալստենէն շնորհք. զի և առաջիկայ բանիւն յայտնագոյնս ցուցանէ զայն. զի ասացեալ, Հաղորդս արա զմեզ, Տէր, աղաչեմք զքեզ, աստուածային պարգևացդ, յարէ 'ի նոյն.

« Թողութեան մեղաց, ընդունելութեան Հոգւոյդ » սրբոյ »: Աղաչեմ, ասէ, զի արիւնդ քո պատուական որ մաքրեաց զտիեզերս՝ և զմեզ սրբեսցէ, և Հոգիդ սուրբ 'ի վերայ մեր եկեսցէ. զի և մեք այսոցիկ պարգևացս հաղորդս լիցուք, և սրբեալ 'ի մեղաց և հոգւով լցեալ՝ քո պարգևացդ շնորհակալութիւն արժանապէս հատուսցուք. այս է զոր ասէն. « Որպէս զի արժանաւորք եղիցուք գոհութեամբ փառաւորել զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ [1]. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն »:

1 Այլ Օ. զքեզ ընդ Հօր և ընդ սուրբ Հոգւոյդ:

## Խաղաղութիւն ամենեցուն.

« Խաղաղութեամբ քով, Քրիստոս փրկիչ մեր, որ » 'ի վեր է քան զամենայն միտս և զբանս, ամրացո զը- » մեզ և աներկիւղս պահեա յամենայն չարէ »։

Այս դրուակ է՝ զոր ասէ երանելին Յովհան, թէ վասն այսահարացն կարգեալ է. քանզի արտաքոյ եկեղեցւոյ կալով այսոտքն՝ յայսմ ժամու 'ի ներքս ածէին սարկաւագունքն, և կացուցանէին յառաջ. և քահանայն զայս մատուցեալ աղօթս, բովանդակ ժողովուրդն պաղատանս վասն նոցա առնեն։

« Խաղաղութեամբ քով, Քրիստոս փրկիչ մեր »։ Դու ես, ասէ, որ փրկեցեր զազգս մարդկան 'ի ծառայութենէ սատանայի. և այժմ փրկութիւն շնորհեա սոցա, ամրացուցանելով քով խաղաղութեամբդ, որ'ի վեր է քան զամենայն զմիտս և զբանս. զի ոչ իմանի մտօք, և ոչ պատմի բանիւք. այլ քան զհրեշտակաց և քան զմարդկան իմացումն և ասելութիւն 'ի վեր անցանէ. «Ամրացո, ասէ, և աներկիւղ պահեա յամենայն » չարէ ». զի ոչ միայն յայնցանէ որ լլկենն, այլ և յամենայն ազգաց դիւաց աներկիւղ արա զմեզ, ամրացուցեալ քով խաղաղութեամբդ։

» Հաւասարեցո զմեզ ընդ ճշմարիտ երկրպագուս » քո, որք Հոգւով և ճշմարտութեամբ քեզ երկիր » պագանեն »։ Քանզի որիշ 'ի ժողովրդենէն աղօթել հրամայէ լլկելոցն 'ի դիւաց. վասն զի որք թափուր 'ի Հոգւոյ լեալ՝ դիւաց մատնին, կամ որք մեղօքն մերկացան զՀոգւոյն՝ չունին իշխանութիւն հաւասարել նոցա, որք հոգւովն Աստուծոյ են միացեալք, նովիմբ զերկրպագութիւն Աստուծոյ մատուցանեն. զորոց Տէր ինքնին ասէ, Ճշմարիտքն երկրպագուք երկիր պագանիցեն Հօր՝ Հոգւով և ճշմարտութեամբ. քանզի և Հայր այնպիսի երկրպագուս իւր խնդրէ։

Արդ՝ աղաչէ աղօթիցս բան, զի սրբեսցին 'ի պիղծ այսոցն՝ և զՀոգւոյն սուրբ ընկալցին, և հաւասարորդք լիցին ճշմարիտ երկրպագուացն, որք հոգւով և ճշմարտութեամբ երկիր պագանիցեն Աստուծոյ. հաստատեալ Հոգւովն 'ի ճշմարիտ հաւատսն, և լուսաւորեալ

նովիմբ, բացաւ երեսօք զփառս Տեառն իբրև ընդ հա-
յելի տեսանեմք, և դէմ յանդիման սուրբ Երրորդու-
թեանն զերկրպագութիւն մատուցանեմք։ Այլ զի հա-
սարակաց ասի այժմ աղօթքն՝ ՚ի հնութենէն յեղեալ
են բանքն. զի յառաջ այսպէս իմանի լեալ, ամրացո
զսոսա, և թէ հաւասարեցո զսոսա ընդ Ճշմարիտ եր-
կրպագուս քո։ Նա և որ այժմ ասէ՝ ոչ ինչ հեռի է
՚ի դիտաւորութենէն. զի ամենայն մեղաց արկածք ՚ի
չարէն են, և Թուի թէ որ վասն այսահարացն աղօ-
թէին՝ այսպէս ասէին. «Ամրացո և աներկիւղ պա-
» հեա՚ի չարէն». իսկ այժմ ասեմք յամենայն չարէ. այս-
ինքն յամենայն նետից նորա. «Հաւասարել և մեզ
» ընդ Ճշմարիտ երկրպագուս քո, որք Հոգւով և Ճըշ-
» մարտութեամբ քեզ երկիր պագանեն». և թէ մեք
չեմք արժանի, այլ զի իրաւունք են և վայել է քո տէ-
րութեանդ տալ զփառս, յայն սակս հաւասարեցո ըզ-
մեզ արժանաւորացն. քանզի այս միտք են որ զկնի
գայ բանն։

» Վասն զի ամենասուրբ Երրորդութեանդ վայել է
» փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յա-
» ւիտեանս յաւիտենից. ամէն» [1]։

Ցայսմ տեղի ասի որպէս յարձակել զժողովուրդն՝
Օրհնեա տէր. զի բեմասացութեան տեղի է, և աւար-
տեն զաղօթսն օրհնութեամբք, և ՚ի վարդապետու-
թեանն յունկնդրութիւն տան զանձինս, և ապա ըզ-
խորհրդականն կատարեն։ Բայց զի յայլում վայրի ա-
սացեալ է մեր վասն որք ոչ կարեւոր համարին զուն-
կնդրութիւն գրոց սրբոց, աստանօր հարկ համարիմ
սակաւ ինչ ասել առ այնոսիկ որք ասեն, զի լսեմ
և ոչ առնեմ՝ ապա բնաւ և ոչ լսեմ, զի մի աւելի դա-
տեցայց։ Ի դէպ է ասել նոցա. ով աներկիւղ երկիւ-
ղածութեանդ. պատգամ Աստուծոյ եկեալ յերկնից,

1 Նոր ՕՕ. աստանօր յաւելուն զբանքս.
Ժողովուրդն ասէ. Ամէն.
Քահանայն ասէ. Օրհնեալ տէր մեր Յիսուս Քրիստոս.
Ժողովուրդն ասէ. Ամէն.
Քահանայն դառնայ առ ժողովուրդն. հրաման տայ երախայիցն ելանել, ասելով. Տէր Աստուած օրհնեսցէ զամենեսեան.
Սարկաւագն Սաղմոս ասացէք տեառն Աստուծոյ մերոյ։ Եւ ասէ սրբասացութիւն ըստ խորհրդոյ աւուրն։

Ե՞ր իշխես ասել ոչ լսեմ և ոչ առնեմ։ ապա ուրեմն առաւել դառնացուցիչ քան զհրեայսն գտանիս Աստուծոյ, զի նոքա ունկնդիր լինելով[1] լսէին. Զամենայն զոր ինչ ասասցէ տէր Աստուած մեր լուիցուք և արասցուք. իսկ դու և լսես անգամ ոչ։ Եւ թէ երկրաւոր թագաւորի գրոյ իշխէիր ասել, թէ ոչ կարդամ, և ոչ լսեմ հրամանաց արքային, մահու պարտաւոր լինէիր. Աստուծոյ պատուի հրամանք, և դու արհամարհես. չհամարիս զքեզ յաւիտենական սատակմանն արժանի։ Վա՜յ, ասէ մարգարէն, արհամարհողաց՝ որ արհամարհեն, և արհամարհանօք արհամարհեն զօրէնսդիրն. զայս Եսայի. իսկ Երեմիա՝ որպէս յերեսաց Տեառն. Արք Յուդայ և բնակիչք Երուսաղէմի՝ դարձուցին յիս զթիկունս և ոչ զերեսս. ուսուցի զնոսա ընդ առաւօտս, ուսուցի և ոչ անսացին ընդունել զխրատ։ Տեսանես, քան զչառնելոյն զհրամանն՝ զչլսելոյն առաւել բողոքէ Աստուած։ Տեսցուք զի՞նչ և Սողոմոնի ասէ. Յորժամ գայցէ ձեզ նեղութիւն և պաշարումն, իցէ զի կարդայցէք առ իս, և ո՛չ լուիցեմ ձեզ։ Եւ վասն է՞ր զայս յառաջ քան զայս, և զկնի ասէ զպատճառսն. — յառաջ, փոխանակ զի կոչէի զձեզ և ոչ լսէիք ինձ. յերկարէի զբանս իմ, և ոչ անսայիք, այլ ապախտ առնէիք. և յետոյ՝ ասէ. Խընդրեսցեն զիս չարք և ոչ գտանիցեն. զի ատեցին զիմաստութիւն և զերկիւղ Տեառն ոչ խնդրեցին։ Արդ՝ առաջինն է հնազանդութիւն լսել երկիւղիւ զբանս Աստուծոյ, զոր ընդ մեծ բարեգործութիւնս յարգեցուցանէ Եսայի, այսպէս ասելով. Լուարուք զպատգամս Տեառն՝ որք դողայք 'ի բանից նորա. դարձեալ ասէ. Եթէ ախորժեսջիք և լուիջիք ինձ՝ զբարութիւնս երկրի կերիջիք, ապա թէ ոչ կամիջիք լսել ինձ, սուր կերիցէ զձեզ։ Տես և դու որպիսի՛ բարի ունկնդրացն է յառաջ քան զառնելն, և որպիսի պատիւ. քանզի սիրով խոտորի 'ի չարէն[2], և բարւոյն փափաքէ. և հեզութեամբ և խոնարհ մտօք դողութեամբ ունկն դիր պատգամաց Աստուծոյ, և բնակարան Աստուծոյ լի-

1 Այլ Օ. լսելով։
2 Այլ Օ. քան զսիրոյն, և խոտորեա 'ի չարէն։

ցիս։ Եւ ո՞ ասէ զայդ ասէ. ինքն Աստուած. Երկինք աթոռ իմ, և երկիր պատուանդան ոտից իմոց. և ես յո՞ բնակեցայց, եթէ ոչ 'ի հեզս և 'ի խոնարհս, և ոյք դողան 'ի բանից իմոց. վասն այնորիկ ոչ տայ թոյլ լսել բանսարկուն, զի զայս և նա գիտէ, թէ ախորժութեամբ լուղաց զբանն Աստուծոյ՝ ինքն Աստուած տայ նոցա զերկիւղն իւր, և զինքն 'ի նոսա բընակեցուցանէ. և յորում Աստուած բնակէ՝ նմա ամենայն դժուարինք դիւրինք լինին, և տարժանելիքն ախորժելիք, և քաղցրանայ նմա լուծն Քրիստոսի, և բեռն նորա փոքրոգի լինի նմա. քանզի մեռանի մարմինն մեղացն, և կենդանանայ արդարութիւն[1]. ըստ գրեցելումն, Իսկ եթէ Քրիստոս 'ի ձեզ է՝ ապա մարմինն մեռեալ է վասն մեղաց, և հոգի կենդանի վասն արդարութեանն. ասաց առաքեալ, և զայլսն որ զկնի։ Մարիամ՝ ասէ Տէրն, մասն բարի ընտրեաց, որ ոչ բարձցի 'ի նմանէ. զի նստէր առ ոտս Տեառն և լսէր ըզբանս նորա։ Հաւատարիմ համարեա և դու զՏէրն, և ընտրեա զբարւոք բաժինն զանբառնալին. և մի հաւանիր բանսարկուին խաբէութեանն, և զրկեր զքեզ 'ի բարւոյն. քանզի իւր սերմանցն կամի առնել զքեզ անդաստան. վասն այնորիկ արգելու առ 'ի յընդունելութենէ աստուածային սերմանցն։ Մի հաւանիր օձին՝ որ զԵւայն պատրեաց, զբարւոքն չբարւոք նմա ասացեալ, և զիւրսն նմա աստուածացուցիչս յուսացուցեալ. լուր Աստուծոյ. Ունկն դիք ասէ լսելեօք ձերովք, զհետ եկայք ճանապարհաց իմոց. լուարուք ինձ և կերիջիք ըզբարութիւնս, և վայելեսցեն 'ի բարութեան անձինք ձեր։ Այսքան աւետիք աստ և 'ի հանդերձելումն, և դու ոչ Աստուծոյ՝ այլ սատանայի լսել ախորժես. բանսարկուն զԱստուծոյսն ոչ տայ լսել, զի մի և 'ի ճանապարհն Աստուծոյ եղանիցեմք, և Տեառն բարեացն հասանիցեմք. եհան 'ի դրախտէն զմեզ, կամի զի մի և աստ Աստուծոյ խնամօքն կեցցուք, և մի դարձեալ յանմահական 'ի կեանսն վայելիցեմք։ Լուիցուք Աստուծոյ, զի արասցուք զպատուիրանս նորա[2]. իսկ եթէ ոչ լուիցուք՝ ուստի՞ զառնելն իմասցուք. զիա՞րդ զԱս-

1 Այլ Օ. յարդարութեան։ 2 Այլ Օ. զօրէնս։

տուած հաշտեցուսցուք, չգիտելով թէ որով և որ ի-
ւիք զնա բարկացուցաք: Արդարև և 'ի դէպ գայ մեզ
ասել զբանն Եսայեայ, որ ասէ. Ցայնմ ժամանակի
յայտնեսցին՝ որ կնքեսցեն զօրէնս, զի մի՛ ոք ուսանի-
ցի և ասիցէ կացից մնացից Աստուծոյ, որ դարձոյց
զերեսս իւր 'ի տանէն Յակոբայ, և եղէց յուսացեալ
'ի նա:

Տեսե՞ր զպատճառս չտալոյ լսել գրոց, զի մի՛ յուսով
'ի զեղջ եկեալ քաւութեան հասցեն: Եթէ արդար
ես՝ լուր պատուիրանացն Աստուծոյ, և ես հաստատես-
ցիս յարդարութեան. և եթէ մեղաւոր՝ լուր զսպառ-
նալիսն Աստուծոյ, և ասա որպէս Դաւիթն, Մեղայ
Տեառն. և լուես զնոյն պատասխանի, Եւ Տէր անցոյց
զքև զմեղս քո: Ջանասջիր ոչ բարկացուցանել զԱս-
տուած, ապա եթէ վրիպեսցիս՝ դեղ լիցի քեզ հանա-
պազօրդ մեղանչելոյն հանապազ լսել սաստին Աստու-
ծոյ, և մեղայ ասել և յահի նորա կալ, քան ամենևին
ապստամբել և հեռի 'ի նմանէ լինել: Հայր է, ասա
զնեղութիւնն զոր հասուցանէ քեզ չարն և որովք
խաբէ, և առ 'ի նմանէ իբր 'ի գթած հօրէ՝ խրատ և
օգնականութիւն: Բժիշկ է հոգւոց, ծանո զվէրս քո,
և գտանես 'ի նմանէ դեղ և բժշկութիւն. ոչ բար-
կանայ երբ առաջի անկանիս, թէպէտ և բիւրապատիկ
եղէր զխրատով նորա. միայն [1] տեսցէ զքեզ երթեալ
առ նա և ցուցեալ զվէրսն, չէ յօտարաց բժշկաց՝ եթէ
կարէ անտես առնել զվէրս քո. հայր է, աղեկեզ լինի
'ի քո արտասուէն վասն ախտից հոգւոյ, և վաղվաղա-
կի 'ի բժշկելն պատրաստ է. քանզի և դիւրագայթս
գիտէ զմեր բնութիւնս, և ըստ յաճախութեան ախ-
տից բազմօրինակապէս դեղս պատրաստեաց զխոնար-
հութիւն, զխոստովանութիւն, զանոխակալութիւն,
զթողութիւն յանցաւորին, զողորմութիւն, զպահս,
զաղօթս, զնուէրս, զսրբոց կատարել յիշատակս, ըզ-
հիւրասիրութիւն, զխնամածութիւն որբոց և այրեաց,
զկարեկցութիւն առ եղբարս, և որ սոցին նմանն են
բարեգործութիւնք, զորս գոյ յաստուածայինն խրա-
տուց առնուլ օրինակս օր ըստ օրէ 'ի բժշկութիւն

1 Այլ Օ. միայն ցոյց զվէրսն. չէ յօտարաց, և այլն:

հոգւոյ: Ի վերայ ամենայնի և նախ քան զամենայն, Քրիստոսի հանապազորդ պատարագիլն. զի վասն մեր հանապազ 'ի յանցանս անկանիմք՝ միշտ պատարագիլ առ 'ի քաւութիւն. ոչ շատացեալ որ 'ի խաչին մի անգամ պատարագեցաւ[1], այլ յաճախապէս զնոյն զենումն յանդիման Աստուծոյ՝ վասն հաստատելոյ կենդանեաց և ննջեցելոց՝ յամենայն եկեղեցիս սուրբ պատարագաւն մատուցանէ. զի զոր անդր 'ի վեր 'ի բարձրութեան խաչին զքաւութիւն տիեզերաց շնորհեաց, զնոյն և սուրբ պատարագաւն որ ըստ օրէ շնորհեսցէ: Վասն այսորիկ պարտիմք հաստատուն հաւատով և մեծ յուսով 'ի ժամուն յայնմիկ կալ առաջի Աստուծոյ ահիւ և դողութեամբ. պարկեշտացեալ 'ի կերակրոց և ըմպելեաց, ըստ կարի զօրութեանն 'ի կարօտանս տուեալ տուրս, խոստովան լինելով Աստուծոյ զգործեալսն արտաքոյ կամացն Աստուծոյ, և արտասուալից ջերմեռանդն պաղատանօք սուրբ պատարագաւն հայցել քաւութիւն. զի ամենողորմն Աստուած իւր միածնին մեծութեամբն որ վասն մեր՝ սրբեսցէ 'ի մեղաց և ազատեսցէ յամենայն պարտեաց, և ամրացուցեալ և պարուրեալ զմեզ սուրբ խորհրդովն, անըմբռնելիս արասցէ 'ի թշնամւոյն, նաև ահարկու ևս նմին տացէ մեզ լինել, մանաւանդ թէ զգլուխ նորա կոխել, և անվնաս 'ի նմանէ լինել: Յաղագս որոյ և անարգել ոք առ Աստուած է մտացն ճանապարհորդութիւն՝ ունել զհայցումն, և անտի բարեօքն աստուածայինն խոկ բերկրեալ յուսալից և յարագուարձ եղեալ:

Բայց զի չափաւորապէս առ որ բանս էր ասացաւ՝ սկզբանն արասցուք խորհրդականացն բացայայտել ըզբանս, օգնականն զնոյն ինքն զպատարագեալն ունելով: Ի մերձիլ սուրբ խորհրդոյն յահագին սեղանն՝ ասէ առաքեալն:

« Մի՛ ոք յերեխայից, և մի՛ ոք 'ի թերահաւատից, և
» մի՛ ոք յանապաշխարից մերձ կացցէ կամ հաղորդես-
» ցի[2] »: Հրամայէ թէ երեխայ ոք իցէ, կամ թերի 'ի հաւատոյն, կամ ոչ ապաշխարեալ զմեղս իւր՝ արտաքս

1 Այլ Օ. պատարագ:
2 Այլ Օ. յապաշխարողաց և անմաքրից:

գնալ. քանզի յելանելն 'ի սուրբ սեղանն հացին և բաժակին նուիրաց՝ բանին երկինք, և երկնայինքն յերկիր իջեալ՝ զուրախարար սեղանովն բոլորին. վասն այնորիկ զոչ սրբեալսն աւազանաւն, և զոչ մաքրեալսն ապաշխարութեամբ և որք ոչ են հաստատեալ 'ի հաւատս՝ արտաքս վարէ քարոզն[1]:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՔԱՐՈԶԻՆ

« Կացցուք առաջի սրբոյ սեղանոյս Աստուծոյ ահիւ »: Որպէս 'ի քնոյ ընդոստուցանէ քարոզն, զսեղանն՝ Աստուծոյ սեղան կոչելով, զի առաջի Աստուծոյ կայ և զորդին Աստուծոյ 'ի վերայ ունի բազմեալ. յաղագս որոյ ահիւ կալ ասէ առաջի:

« Մի խղճիւ գայթակղութեամբ »: Խիղճ գայթակղութեան զգայթակղեալն 'ի մեղս ասէ, զոր թէ ոչ խոստովանութեամբ հանեալ իցէ 'ի սրտէ՝ մի կացցէ առաջի սրբոյ սեղանոյն յահաւոր յայնմ ժամուն:

« Մի նենգութեամբ խորամանկութեամբ »: Նենգ-

1 Աստի ցմեկնութիւն Քարոզին պակասէ յԱ և յայլ ՕՕ. ինչ:

« Մարմին տէրունական և արիւն »փրկչական կայ առաջի, երկնա»յին զօրութիւնքն աներևոյթս »երգեն և ասեն անհանգիստ բար»բառով, Սուրբ սուրբ սուրբ տէր »զօրութեանց »: Յետ այսորիկ արտաքս հանեն նախ զերախայսն, որք եկին 'ի հաւատս, բայց դեռ չեն ընկալեալ զլուացումն աւազանին, վասն անկատարութեանց. զորս և թերահաւատ կոչեն, քանզի չեն կատարեալ 'ի հաւատս, և ապա զապաշխարողսն, որք 'ի մեղս ինչ չարեաց թաւալեցան և դարձեալ 'ի զղջումն եկեալ խոստովանեցան, բայց դեռ չեւ է լցեալ նոցա թիւ աւուրցն ապաշխարութեան: Եւ զկնի նոցա զանմաքուրսն, այսինքն որք յանմաքուր այսոցն չարչարին: Սոքա երբեքեան դասք մինչև յայս ժամ կան ընդ սուրբ հաւատացեալսն, զի տեսեալ զքահանայապետն որ ձեւացաւ 'ի նմանութիւն Քրիստոսի, և եցոյց զանհամեմատ սէրն իւր առ մարդիկ, օգնեսցեն յայնմանէ. այլ մարգարէական և առաքելական և աւետարանին ընթերցումն, խրատ զգուշութեան և 'ի սնունդ անկատարութեան նոցա լինի: Իսկ այժմ հանդերձեալ է ինքնին թագաւորն Քրիստոս 'ի խորհուրդ մտանել ընդ սիրելին և ընդ հաւատարիմ ծառայսն իւր, որք են քահանայական դասք, ոչ է պարտ լինել անդ անկատարիցն, բայց կատարելոցն 'ի Քրիստոս: Իսկ կիսատարկաւագացն հանել զնոսա արտաքս, և պահել զդրունսն, վասն զի նոքա դաստիարակեն զնոսա, և սնուցանեն հոգևորական կաթամբ հին և նոր կտակարանացն:

գութիւն խորամանկութեան ասի՝ որ կեղծաւորին սէր և խաղաղութիւն ունել առ եղբարս, և յանձինս նենգութեամբ զչարութիւն խորհին, զոր ոչ ընդունի աստուածեղէն խորհուրդն, այլ արտաքս հանէ։

« Մի՛ պատրանօք խաբէութեամբ »։ Բազմադիմի են խաբէութեան պատրանք՝ և առ Աստուած և առ մարդիկ. նախ առաջին, հաւատովն կերպարանել ուղղափառութիւն, չարափառ գոլով. կամ յարդար ձևացեալս՝ մեղաւոր լինելով. կամ առ մարդիկ երևեալ այն՝ որ չիցէ ստոյգ, կամ սիրուն, կամ պարզամիտ, և որ այլ ինչ է խարդախութիւն, ստութիւն և խաբէութիւն, զայն ցուցանելով յինքն՝ որ չիցէ, զորս 'ի բաց մերժէ Տէր ասելով. Ի բաց կացէք յինէն ամենեքեան՝ որք գործէք զանօրէնութիւն։

« Մի՛ երկմտութեամբ թերահաւատութեան »։ Երկմտութիւն թերահաւատութեան է՝ եթէ յայնցանէ զոր դաւանիմք զկնի սուրբ աւետարանին զհաւատն՝ երկմիտ և թերի իցէ ոք իւիք. կամ 'ի սուրբ խորհուրդն՝ ոչ որպէս յԱստուծոյ մարմին և յարիւն հաւատայ, կամ որ ինչ 'ի նմա յոյսն՝ թերացեալ իցէ իւիք. զոր նախ աղօթիւք և գրոց խրատուք ուղղել պարտ է. զի որպէս գրեալ է, մաքրելի է նախ առաջին և ապա 'ի մաքուրն մերձենալի։

« Այլ ուղիղ վարուք »։ Ուղիղ վարք այն է՝ զոր պատուիրանն ասէ, անթիւրն յաջ կամ յահեակ։

« Պարզ մտօք »։ Այն երևել զինչ իցէ, և ոչ յայլ գունեալ։

« Միամիտ սրտիւ »։ Ողջամիտ առ Աստուած և առ մարդիկ, և ոչ ուրեք խորհրդովն թիւրեալ։

« Կատարեալ հաւատով »։ Այս է կատարումն հաւատոյն, զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին ճանաչել, երիս անձինս և մի Աստուած, ոչ գիտել 'ի նոսա առաւել կամ նուազ, կամ յառաջ կամ յետոյ, այլ հաւասար, և միապէս յամենայնի, և նոյն բնութեամբ. ծնօղ զՀայր, և ծնունդ զՈրդի, և ելումն զՀոգին[1] և ոչ ծնունդ. անժամանակք երեքեան և իսկզբանէ ընդ Հօր Որդի և Հոգին սուրբ. մարմնացեալ Որդին 'ի

1 Այլ Օ. յաւելու 'ի Հօրէ։

Մարիամայ անճառապէս, և անփոփոխարկաբար. Նոյն ինքն Աստուած ճշմարիտ և մարդ կատարեալ. զաստուածութեանն զօրութիւն ցուցանելով՝ որպէս զԱստուած, և զմարդկայինսն առանց մեղաց կրելով որպէս մարդ, միաւոր բնութեամբ[1]. Նոյն ինքն խաչի և մահու համբերեալ և յարուցեալ երեքօրեայ, և ընդմերն բարձեալ զանէծս և զմեղս և զմահ: Մերով մարմնովս համբարձեալ յերկինս, և գայ դատել ընդկենդանիս և զմեռեալս, և հատուցանել ըստ իւրաքանչիւր գործոց, արդարոցն՝ կեանս յաւիտենականս, և մեղաւորացն՝ տանջանս յաւիտենականս. խոստովանել և զմկրտութիւնն՝ վերստին ծնունդ 'ի Հոգւոյն սրբոյ, յորդեգրութիւն Հօրն երկնաւորի. հաւատալ և զփրկական խորհուրդն՝ ստուգապէս մարմին և արիւն Քրիստոսի. որով միանամք 'ի Քրիստոս, և ժառանգակից նորուն լինիմք: Այսու հաւատով լինել կատարեալ:

«Լցեալ սիրով»: Աստուածսիրութեամբ լի և եղբայրսիրութեամբ անթերի:

«Առաւելեալ ամենայն գործովք բարութեանց»: Որ ինչ յաստուածսիրութենէն և յեղբայրսիրութենէն բարիք:

«Կացցուք առաջի սրբոյ սեղանոյս Աստուծոյ»: Դարձեալ վերստին յիշեցուցանէ զկալն առ սեղանն Աստուծոյ, զի առաւել ընդ ահիւ փակեսցէ:

«Եւ գտցուք ողորմութիւն յաւուր յայտնութեան »'ի միւսանգամ գալստեան փրկչին մերոյ»: Յիշեցուցանէ և զահաւոր գալուստն Քրիստոսի, զի մի անփոյթ մատիցուք առ աստուածային սեղանն. զի եթէ խղճիւ կացցուք՝ մեծապէս լինիմք կշտամբեալք, որպէս զանտեղի հանդերձիւք մտեալն 'ի հարսանիսն. ապա թէ լուացեալ զաղտն, և հարսանեաց զգեցեալ պատմուճանս՝ ըստ խրատու քարոզին, ողորմեալ լինիմք յայնմ աւուր, և ողորմութեամբն Քրիստոսի 'ի նորա բարիսն վայելեմք. զի թէպէտ բիւրապատիկ լցեալ իցեմք արդարութեան վաստակօք, սակայն ողորմութեամբ են

1 Իմա՝ անշփոթ միաւորեալ աստուածութեամբ և մարդկութեամբ:

պարգևքն, բազմապատիկ առաւել քան զվաստակն մեր. աղօթիւք կնքէ զքարոզն ասելով. «Ամենակալ տէր Աստուած մեր, կեցո և ողորմեաց մեզ». զի թէ ողորմութեամբդ ոչ օգնիցիմք՝ ոչ կարեմք այնպիսի մաքրութիւն ստանալ՝ մինչ զի խառնումն ընդ քեզ ունել. այլ ողորմելովդ լիցուք արժանի, և հասցուք կենացն յաւիտենից։

## ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

«Տէր Աստուած զօրութեանց, և արարիչ ամենայն լինելութեանց»։ Բազում անգամ ասացաք յայլ աղօթսն, թէ տէրն անուն վասն տիրելոյն է. իսկ աստուածն վասն ստեղծանելոյն և յաստիս ածելոյ զեղեալքս։ «Զօրութեանց», թէ հրեշտակաց, զի ոչ միայն երկրի և որ 'ի նմա են՝ տէր Աստուած է, այլ և երկնից և երկնայնոցն, զոր ասէ մարգարէն. Օրհնեցէք զՏէր՝ ամենայն հրեշտակք նորա. զօրք զօրութեանց, որ առնէք զբան նորա։ «Եւ արարիչ ամենայն լինելութեանց», թէ որ ինչ լեալք են՝ ամենայն քո հրամանաւ են հաստատեալ. բայց որ ասենն զայս, և որ լսել արժանանան, իմասցին թէ նմա առաջի կամք՝ որում զօրք հոգեղէնք և հրեղէնք են սպասաւորք. որ ասաց ամենայնի և եղեն, հրամայեաց և հաստատեցան։

«Որ յանէութենէ զընաւս 'ի ցուցակութիւն ածեալ գոյացուցեր»։

Յանէութենէդ՝ է յանլինելութենէ. զընաւս՝ զամենայնս. 'ի ցուցակութիւն՝ 'ի ցուցումն և 'ի տեսութիւն. ածեալ գոյացուցեր՝ գոյս արարեր զորս չէինն, զանինչն՝ ինչ արարեր, զչգոյն՝ գոյացուցեր, զոր ոչն էր՝ 'ի տեսութիւն ածեր։ Բանքս սակաւ են, և մտածութիւն անհաս ունի. չէին երկինք և ոչ երկնից երկինք. ոչ վերնոցն զանազան և անթիւ բազմութիւնք, ոչ արեգակն, ոչ լուսին, ոչ աստեղք, ոչ օդ, ոչ ամպք, ոչ անձրևք, ոչ երկիր, ոչ հուր, ոչ աղբիւրք և գետք և ծովք. ոչ ազգի ազգի բոյսք և տունկք և սերմանիք, իւրաքանչիւր հոտովք և ծաղկովք և պտղովք և համովք. ոչ բազմատեսակ անասունք, և գազանք, և սողունք և թռչունք և ձկունք. ոչ պատուական և պի-

տանի նիւթք, ոսկի, արծաթ, պայծառ քարինք, երկաթ, պղինձ, կապար, ապակի, և սոցին նմանք. ոչ աղբիւրք Ճարպոյ, կամ որ զաղն բերեն ջուրք և լերինք. այլ որքա և որ այլ ևս են լինելութիւնք՝ յօչընչէ եղեն կամելովն Աստուծոյ, և գործ եղեն և տեսութիւնք յանդիմանակաց: Եւ յայն սակս նախ զդիր գոհութեանցս զայս եդ, զի ընդ ամենայնի սրբով պատարագաւն գոհացողք լիցուք. և սարսեալք յամենազօր և յամենարար Տեառնէն՝ մեծաւ ահիւ յանդիման նորա կացցուք, և զաղօթս մեր մատուսցուք, և ամենայն սրբութեամբ 'ի սուրբ խորհուրդն մատիցուք:

« Որ և զմեր հողեղէն բնութիւնս պատուեալ մար-
» դասիրապէս, այսպիսի անպատում և ահաւոր խոր-
» հրդոյ կարգեցեր սպասաւորս »: Հողեղէն կոչէ ըզմարդկան բնութիւնս. վասն զի 'ի հողոյ ստեղծաւ մարմինն. պատիւ կոչէ զքահանայութիւն, և մարդասիրապէս, վասն զի սիրեաց զմարդիկ, և զայն պատիւ ետ՝ որում և ոչ հրեշտակք չէին[1] բաւական: Անպատում ասէ և ահաւոր զսուրբ խորհուրդն. անպատում է, զի ոչ պատմի բանիւ որ ինչ էն, և ահաւոր է՝ վասն ահագին փառացն. զի յորոց տեսանէին՝ թէ յանմարմնոց հրեշտակաց և թէ 'ի մարմնաւորաց սրբոց, անհանդուրժելի և ահեղ նոցա է. բայց որքան է՝ ոչ տեսաւ՝ յումեքէ. զի զԱստուած ոչ ոք ետես երբէք. արդ զի որդի Աստուծոյ է մարմինն՝ Աստուած է անտես յամենայն բնութենէ[2] և սպասաւորի 'ի հողեղինաց: Ասաց նախ առաջին զԱստուծոյ մեծութիւնն 'ի տիրելոյ վերին զօրացն, ապա յարարչութենէն, իսկ աստանօր ասէ յանպատում և յահեղ փառացն. և թէ որ այդպիսիդ ես՝ առ սէր քո բարերարութեանդ զհողս յայսքան պատիւ վերաբերեցեր, մինչև սպասաւոր անճառ խորհրդոյս լինել: Եւ խօսիմք զայս ընդ Հօր, պատարագ նմա ընծայեալ զՔրիստոս. յաղագս որոյ ասէ բանն. թէ,

[1] Այլ Օ. լինէին:

[2] Ըստ աստուածաբանից փոխատրեն երբեմն Ս. Հարք զյատուկս բնութեանցն 'ի Քրիստոս՝ վասն սքանչելի միաւորութեանն, և որպէս ասի Աստուած մեռեալ, այսպէս ասէ սա զՔրիստոս անտես լինել՝ զի Աստուած է:

« Դու Տէր, որում պատարագեմք զպատարագիդ՝ « ընկալ առ 'ի մէնջ զառաջադրութիւնս զայս »: Պատարագ կոչի ընծայ. դու Տէր, ասեմք ցՀայր, որում ընծայեմք մեք մարդիկս այսպիսի պատարագումն, զոր պատարագիս ասաց բանն. և դու, ասէ, ընդունել սովոր ես, այժմ և 'ի մէնջ ընկալ զոր առաջի եդաք:

Յամենայն պատարագամատոյցսն, առաջին աղօթքն վասն մատուցանողին արժանաւոր լինելոյ ասի, և զսոյն միտս ունի. աղաչէ չհամարել խոտան զմատուցօղն. այս է զոր ասէն, Ընկալ առ 'ի մէնջ. թէ որպէս մեծարեցեր զբնութիւնս մեր, և ընդունիս պատարագել քեզ մարդկան զայսպիսի պատարագ, զնոյն արասցես և մեզ, անտես առնելով զոր յանցեաքն:

Հանապազ իսկ՝ բայց առաւել առ ահեղ խորհրդոյն՝ յանցանքն մեր առաջի մեր լիցին, և յիշեսցին անուղղայ գործեցեալքն 'ի մէնջ. և սխալանացն յիշմամբ և մեր բնութեանս անարգութեամբ՝ զհպարտութիւն զամենայն 'ի բաց ընկեսցուք. զի թէ հայրապետն Աբրահամ՝ որ ոչ գիտէր զանձին խիղճ ինչ, այլ և բազում ուղղութեանց վկայ զԱստուած ունէր, համայն 'ի խօսել անդ ցուցանէր զինքն ոչ հող միայն այլ և մոխիր, ապա որչափ ևս առաւել մեզ մեղաւորացս պարտ է բնութեամբս և վնասակար գոլով ցածնուլ. զի և պատարագ իսկ խոնարհ հոգւին լինի Աստուծոյ, և նախ զինքն Աստուծոյ մատուցանէ խոնարհելովն և սրբելով զսիրտն 'ի խղճէ չարեաց, և զսիրտ սուրբ և զհոգի խոնարհ՝ Աստուած ոչ արհամարհէ:

« Եւ աւարտեա զսա 'ի խորհրդականութիւն մարմնոյ և արեան միածնի քոյ »: Աւարտ՝ կատարման իրաց սովոր եմք կոչել. ասեմք թէ սորա կատարումնն՝ եղիցի լինել մարմին և արիւն որդւոյն Աստուծոյ: Դարձեալ և խորհուրդ Աստուծոյ է, զոր յայտնեալ է, և յայտնէ սրբոց իւրոց, և ծածուկ է 'ի պղծոց. զի մի տացի սրբութիւն շանց, և մի՛ ընկեսցի մարգարիտ խոզաց, զի մի առ ոտն կոխեսցի. վասն այնորիկ և մի՛ փայրապար զայսպիսի խորհուրդ անհաւատիցն տացուք. զի մի այպանեալք 'ի նոցանէ երգիծանիցիմք. այսինքն է, զի մի՛ կսկիծ 'ի սիրտ առցուք. Զի ձաղ խաչին կորուսելոցն յիմարութիւն է: Ոչ փայրապար և զմիածնին բանն

եղ 'ի վերայ որդւոյն. այլ զի յուշ լիցի մեզ՝ թէ որպիսի սէր գտաք յԱստուծոյ, զի մի որդին նորա՝ որ միայն է նորա ծնունդ՝ պատարագեսցի վասն մեր:

« Դեղ Թողութեան մեղաց պարգևեա ճաշակո-
» ղացս զՀացս զայս և զգինիս. շնորհօք և մարդասի-
» րութեամբ Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիս-
» տոսի »: Վասն զի կերակրով մեղաք և մահկանացուք եղաք, կերակրով դարձեալ զքաւութիւն և զանմահութիւն ստանալ մեզ՝ Քրիստոսի չարչարանքն պարգևեցին. աղաչեմ վասն հացիս և գինւոյս եդելոյ 'ի սեղանն, զի լինելով մարմին և արիւն Քրիստոսի՝ լիցի մեզ քաւիչ և կեցուցիչ 'կենդանեաց և մեռելոց. և այս վասն սիրոյն Քրիստոսի, որ մեռաւն վասն մեր, զոր շնորհ և մարդասիրութիւն կոչէ: Զի չիք ոք առանց սխալմանց, և բազում են՝ զոր անգիտութեամբ մեղանչեմք. և զի որ խոստովանեն և զապաշխարութիւն ցուցանեն՝ քաւութիւն սուրբ խորհրդոյս առնուն, և միաւանգամ 'ի Քրիստոս միանան, լինել նմա մարմին և անդամ՝, վասն այնորիկ մեծի դեղոյն 'ի խնդիր լինիմք:

« Ընդ որում քեզ Հօր ամենակալի, Հանդերձ կեն-
» դանարար և ազատիչ սուրբ Հոգւովդ՝ վայելեն
» փառք, իշխանութիւն և պատիւ »: Ամենակալ կոչէ զՀայր, զի ընդ իւրով իշխանութեամբ ունի զերկինս և զերկիր լրիւ իւրեանց. կենդանարար և ազատիչ ասաց զՀոգին սուրբ, զի նովաւ աւազանին զմեզ վերստին ծնանի որդիանալ Աստուծոյ, ազատելով 'ի մեղաց և կենսագործելով յանմահական կեանս. նոյն և զսուրբ խորհուրդն՝ զկենդանարարն և զազատիչն՝ գործէ: Նա և զՀանդերձեալ նորոգումն յարութեամբ մեզ շնորհէ. վասն որոյ բարերարի սուրբ Երրորդութեանն վայելուչ ասէ և արժանաւոր զփառաւորութիւնն. այսպէս ասելով. « Նմա վայելեն փառք, իշխանութիւն և պա-
» տիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից »:

## ՔԱՐՈԶ

« Ողջոյն տուք միմեանց 'ի համբոյր սրբութեան »։ Համբոյր սրբութեան է՝ որ սուրբ սիրովն է, և ոչ նենգաւոր և ոչ պոռնկական խորհրդով, այլ յստակ սրտօք հեղցէ յեղբայրն։ « Որ ոչ կարող էք հաղորդել՝ 'ի » միմեանց ուսարուք, և առ դրունս աղօթեցէք »։

« Պատարագ Քրիստոս մատչի »։ Եւ զի Քրիստոս է որ պատարագին՝ անմաքուրքն և աղտեղեալքն ոգւով արտաքս ելցեն, զի չեն արժանի 'ի հոգևոր ուրախութիւնս վայելել. խրատեսցեն զմիմեանս սուրբ գրովք, և առ դրունս աղօթեսցեն. սգացեալ սրտիւ և ջերմեռանդն արտասուօք ողբասցեն զզրկանսն, զի 'ի հոգևոր հարսանեացն արտաքս վարեցան, զի չեղեն արժանիք յահաւոր ժամուն՝ մերձենալ առ երկնաւոր սեղանն, և ոչ երգակցել հրեշտակացն անդր գումարելոց, և ոչ 'ի Քրիստոս միանալ խորհրդովն սրբով, և 'ի մի հոգի նովաւ լինել։ Արդ որք ըստ այսմ խորհրդոյ ելանեն արտաքս, երկիւղիւ և ամօթով զիւրեանց սխալանսն խոստովանութեամբ առաջի Աստուծոյ ունելով՝ հաշտութիւն հայցիցեն յամենողորմն Աստուծոյ՝ 'ի ձեռն Քրիստոսի զենմանն, փութով քաւութեան հասցեն. իսկ անզգայքն և ելեալքն յերեսաց Աստուծոյ և մերժեալքն 'ի սրբութեանցն, որ ոչ եկեսցեն յապաշաւանս, այլ սովորական իրս համարելով՝ ելանիցեն խնդամիտ, և մնայցեն անտրտում, ևս առաւել շարժեն 'ի ցասումն զանքարկանալին Աստուած. զի և ոչ 'ի պատուհասելն և յորոշելն 'ի սրբոցն և 'ի բացեայ առնելն յիւրմէ՝ հոգայցեն ինչ, վասն որոյ յիրաւի դատին։

« Ահիւ կացցուք, երկիւղիւ կացցուք, և նայեցարուք զգուշութեամբ »։ Զի թէ որ ամենևին սուրբքն են անմարմին զօրքն, յիսկզբանէն մինչև ցայժմ երկիւղալից ահիւ կան առաջի մեծի փառացն Աստուծոյ, որչափ ևս առաւել մեք՝ որ հանապազ 'ի յանցանս ըմբռնիմք՝ դողալ և սարսափել պարտիմք. և զինչ է նայելն զգուշութեամբ. մի իբր 'ի լոկ հաց և 'ի գինի նայել՝ որք 'ի ներքս մնայցեն, այլ մարմին և ա-

թիւն Աստուծոյ հաւատալ զառաջի եղեալն. և մեծ ահիւ կալ, և որպէս յԱստուած հայել. զորոյ զհետ գայ տունն և ուսուցանէ:

« Պատարագ Քրիստոս մատչի 'ի միջի մերում » զառն Աստուծոյ »: Այս է՝ յորմէ երկնչելն և դողալն հրամայիմք. զի նա որ 'ի կուսական յարգանդին 'ի Մարիամայ առեալ մարմին՝ միացաւ 'ի նոյն բովանդակ աստուածութեամբն, այժմ ըստ նմին նմանութեան 'ի հացս և 'ի բաժակս միանայ. և որ 'ի խաչին անշնչացաւ՝ անշնչապէս և 'ի սեղանս յայս զնոյն մեռելութիւն ըստ մարմնոյ ցուցանելով, և զենումն՝ կենդանի աստուածութեամբն գոլով՝ մատուցանի սուրբ Երրորդութեանն պատարագ. գոհայութիւն տուեցելոյ պարգևացն, և քաւութիւն մեղացն գործելոց, և փրկութիւն յառաջիկայն, և բարեխօս առ հանդերձեալսն կենդանեաց և մեռելոց: Զայս օրինակէին 'ի հնումն օրէնք՝ անասնոյն մատուցմամբ, ոմանք գոհութեան նուէրք, կէսք քաւութեան, այլք վասն փրկութեան. 'ի մի յայս բովանդակեալ 'ի մեծի պատարագիս խորհուրդ: Արդ յառաջ քան զսա տանն՝ որ զգուշութեամբն նայել հրամայէ՝ ասեն առաջի կացեալքն, թէ « Առ քեզ աստուած »: Այս ինչ է, եթէ առ քեզ հայիմք՝ և հաւատամք զի յանապականութիւն աստուածութեանդ քոյ փոխարկես զընծայումս: Իսկ այսմ տան ասեն, « Ողորմութիւն և խաղաղութիւն » և պատարագ օրհնութեան ». զասացեալն 'ի մէնջ ցուցանելով. զի ողորմութիւն է՝ քաւիչ մեղաց լինելով. խաղաղութիւն է՝ փրկութիւն և խաղաղութիւն հոգւոց և մարմնոց շնորհելով. զի և ոմանք 'ի հնոցն պատարագաց՝ խաղաղականք անուանեին. իսկ պատարագ օրհնութեան է՝ զի ընծայի Աստուծոյ 'ի գոհութիւն ամենայն երախտեաց նորա, յիսկզբանցն հետէ առ մեզ եղելոց. և օրհնեմք ընդ ամենայնի սուրբ պատարագաւն զԱստուած. որպէս և բանք պատարագամատուցացն յայտ առնեն:

« Շնորհք, սէր և աստուածային սրբարար զօրու» թիւն՝ Հօր և Որդւոյ և [1] Հոգւոյն սրբոյ եղիցի ընդ

1 Հօր և Որդւոյ և պակասէ 'ի բազում ՕՕ:

» ձեզ ամենեսեան » ։ Այս է զոր գրեաց Պօղոս Կորն-
թացւոյն. « Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստո-
» սի և սէրն Աստուծոյ և հաղորդութիւն Հոգւոյն
» սրբոյ եղիցի ընդ ձեզ ամենեսեան » . և զայս որ զպա-
տարագն մատուցանէ՝ տայ ժողովրդեանն, թէ որ ինչ
Քրիստոսի տնօրէնութեամբն քաւութիւն եղև և պար-
գևք շնորհեցաւ, և սէրն Աստուծոյ Հօր որ որդեգրեաց
զհաւատացեալս, և Հոգւոյն կցորդութիւնն՝ որ ընդ
սուրբս, եղիցի ընդ ձեզ. զի մաքուրք լեալք՝ և 'ի սէրն
Աստուծոյ միացեալք, և Հոգւոյն սրբոյ հաղորդեալք՝
յառագաստին երկնայնում ընդ անմահ փեսային ի-
ցեմք։ Ապա ասի 'ի մերձ կացելոցն, ոչ որպէս 'ի տալն
զխաղաղութիւն յաղօթսն, զի անդ ասեն, Եւ ընդ
հոգւոյդ քում, թէ և քում հոգւոյդ. իսկ աստ թէ 'ի
հոգւոյդ քում. զի որպէս 'ի Մովսէսի հոգւոյն՝ եօթա-
նասունն և երկու ծերոցն տուաւ հոգին, նոյնպէս և 'ի
քո հոգւոյդ մեզ պարգևեսցէ, որ նման Մովսէսի առ
Աստուած մտեալ՝ զմերս մատուցանես գոհութիւնս և
մաղթանս։ « Վեր արարէք զմիտս ձեր յաստուա-
» ծային խորհուրդս » . զի թէպէտ և յերկրի աստ կա-
տարի՝ յերկինս է պատարագումնս. վասն որոյ աս-
տուածայինն Պօղոս գրէ. Զվերինն խորհեցարուք, մի
զայս որ յերկրի աստ է։ Եւ ասեն առ այս.

« Ունիմք առ քեզ, Տէր ամենակալ » . թէ առ քեզ՝
Տէր ամենակալ, ամբարձաք զհոգիս մեր. որպէս թէ
անդ ոգին բնակէ և անդուստ 'ի յամենայն մարմինն
ազդէ։

« Եւ գոհացարուք զՏեառնէ բոլորով սրտիւ » ։ Վասն
զի սկիզբն կամի առնել գոհութեանցն, խրատէ զամե-
նայն միտս բոլորովիմբ զկնի գոհացողական բանիցն
համբառնալ և գոհանալ զԱստուծոյ։ Յորոց ասի. « Ար-
» ժան և իրաւ » ։ Արժան է գոհութեան, և յիրաւի
գոհանալ զնորա բարերարութեանցն է, քանզի պար-
տապան եմք։

# ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՂՕԹԻՑ ԶՈՐ ԱՍԷ ՔԱՀԱՆԱՅՆ Ի ԾԱԾՈՒԿ ։

« Արժան է ստուգապէս և իրաւ ամենայորդոր փու- » թով, քեզ՝ Էն և Ես և Էդ Աստուած, անսկիզբն և » անքննելի, երրեակ միութիւն, միշտ երկրպագել փա- » ռաւորելով » ։ Ըստ ասելոյն 'ի ժողովրդոցն՝ կրկնէ քահանայն, թէ արժան է ստուգապէս և իրաւ. Ճշմարտապէս ասէ, իրաւացի է ։ Ամենայորդոր փութով. փոյթ է սրտի մտօք հոգ տանել. իսկ ամենայորդոր փոյթն՝ զսաստիկ ջերմութիւն ոգւոյն ասէ, որ յամենայն սրտէ և 'ի զօրութենէ և 'ի մտաց՝ յորդորի 'ի փոյթն, ըստ Պօղոսի խրատուն. Ի փոյթ՝ մի՛ վեհերոտք, հոգւով եռացէք ։ Արդ այսպիսի արժան է 'ի քո երկրպագութիւնն վերաբերիլ ։ « Էն և Ես, և Էդ Աստուած ». որ Էիր յառաջ քան զյաւիտեանս, և այժմ Ես և մնաս յաւիտենից յաւիտեանս ։ Անսկիզբն. ոչ ունիս լինելութեան սկիզբն և առաջ. և անքննելի, զի ոչ 'ի հրեշտակաց և ոչ 'ի մարդկանէ քննի քո որպիսութիւնդ կամ գտանի ։ Երրեակ միութիւն, երեք անձն և մի բնութիւն աստուածութիւն ։ Քեզ, ասէ, անսկզբանդ և անքննին միասնական Երրորդութեանդ՝ արժան է հանապազ ամենայորդոր փութով երկրպագել փառաւորելով. և թէ վասն ոյր է փառաւորելի և երկրպագելի այսպիսի փութով՝ ասէ, 'ի Հայր զբանն ձգելով.

« Որ քոյին, Հայր, անզննելի և արարչակից բանիւդ՝ » զանիծիցն բարձեր զկրճիմն » ։ Բան կոչէ զՈրդի. զի անախտ ծննդեամբ 'ի Հօրէ՝ որպէս բան 'ի մտաց. և ծանուցիչ է կամացն Հօր, որպէս բան ծանուցիչ կամաց խօսողին. և զի որպէս բան՝ միով ձայնիւ 'ի բազումս՝ բովանդակ և ոչ մասամբ մտանէ, և զի մարմնացաւ, տեսաւ և շօշափեցաւ, անմարմինն՝ ըստ նմանութեան բանի՝ որ 'ի քարտն[1] մարմնանայ և տեսանելի և շօշափելի լինի. և անմեկնելի է 'ի ծնողէն, որպէս բանն յայլոյն հնչէ և 'ի միտս մնայ ։ Անզննելի ասի,

[1] Այլ Օ. 'ի փարփքեան. և այլ Օ. 'ի չնաւէն ։

վասն զի անըմբռնելի և անշօշափելի է բնութիւնն Աստուծոյ։ Արարչակից է, վասն զի հասարակաց Երրորդութեանն է արարչագործութիւնն։ Եւ զի պատուիրանազանցութեամբն՝ անէծքն կրճիմն եղաւ ընդ մեզ և ընդ Աստուած, այսինքն՝ արգել անկաւ և որոշեաց զմեզ յԱստուծոյ և 'ի դրախտէն և 'ի կենաց, և ողորմեալ մեզ Աստուծոյ 'ի բաց եբարձ որ յանիծիցն էր կրճիմն. և զայն ոչ հրամանաւ կամ հրեշտակաւ կամ մարդով սրբով, այլ իւր արարչակից Որդւովն. առաւել գերագոյն պատիւ է՝ քան զբառնալն զանէծսն. այն զի Որդւովն եբարձ։ « Որ ժողովուրդ ինքեան՝ զառ
» 'ի յեկեղեցւոյ սեպհականեաց զհաւատացեալս 'ի
» քեզ ». որ յեկեղեցւոջ են քո հաւատացեալք՝ իւր սեպհական ժողովուրդ արար. սեպհական ասէ՝ սերտն և անհակառակելին. սերտեաց ասէ զմեզ իւր բնական ժողովուրդ, անքակ յիւրմէ տէրութենէն։

« Եւ զննելի բնութեամբ ըստ 'ի Կուսէն տնտեսու-
» թեան հաճեցաւ բնակել 'ի մեզ »։ Զոր աւետարանիչն Յովհաննէս ասէ, Բանն մարմին եղև և բնակեաց 'ի մեզ. այն է զոր ասես. քանզի անզննելի է Բանն, որպէս ասացաւ սմին յառաջագոյն, և մարմնանալովն 'ի Կուսէն զննելի եղև. որպէս 'ի կաթողիկէից թղթին գրէ նոյն Յովհաննէս, թէ Ձեռք մեր շօշափեցին 'ի վերայ բանին կենաց։ Տնտեսութիւն՝ գործառնութիւն է. վասն զի առ յանձն Որդին Աստուծոյ զայս գործել, 'ի Կուսէն որդի մարդոյ լինել։ Բնակելն 'ի մեզ՝ այն է, ըստ մեզ լինել. զոր մարգարէն Եսայի, ծնիցելոյն 'ի կուսէն ասէ, կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ, որ է ընդ մեզ Աստուած։

« Եւ նորագործ աստուածապէս ճարտարապետեալ
» երկինք զերկիրս արար »։ Արդարև նորագործեաց, զի զերկիր երկինս արար, որ Աստուծոյ ճարտարապետութեանն միայն է կարելի. զի 'ի չգոյէ գոյացոյց զերկիրս նախ, և արդ՝ յերկրէ երկինք փոխադրեաց. և թէ որով օրինակաւ այս եղև, ասէ.

« Զի որում ոչն հանդուրժէին առաջի կալ. զուար-
» թնոցն Ջոկք՝ զարհուրեալք 'ի փայլակնացայտ և յա-
» հեղ լուսոյ աստուածութեանդ, եղեալ այդպիսիդ
» մարդ յաղագս մերոյ փրկութեան, շնորհեաց և մեզ

» ընդ երկնայինս պարել ընդ հոգեղէն պարս » ։ Տեսե՞ր, զիա՞րդ եղև երկիրս երկինք. զի երկնից և հրեշտակաց տէրն յերկիր էջ, և մարդ եղև, և զմարդիկ հրեշտակս արար. և զվերին զօրսն և զմարդիկ՝ 'ի միմեանս յարեաց. և միաբան ընդ նոսին զնոցայն օրհնութիւնս յերկրի երկրայնոցս երգել արժանաւորեաց։

Բայց պարտ է՝ նախ քան 'ի գլուխ տանել զգեղեցիկ զայս դրուակ՝ զհրաշալի տօրա զյարմարումն ընդ միտ ածել. թէ որչափ զմեծութիւն Աստուծոյ շնորհին՝ զմի քան զմի յառաջ մատուցեալ՝ յոյժ գերազանց ցուցանէ։ Եւ արդ տես անդուստ 'ի սկզբանէն։ Արժան է ստուգապէս և իրաւ ամենայնորդոր փութով՝ քեզ էն և ես և էդ Աստուած, անսկիզբն և անքննելի երրեակ միութիւն, միշտ երկրպագել փառաբանելով. որ քոյին, Հայր, անզննելի և արարչակից Բանիւդ՝ զանիծիցն բարձեր զկրճիմն։ Մեծ էր յոյժ պարգևն՝ յանիծիցն ազատել. բայց ևս մեծ է, զի միածնաւն զայս արար. որ լինքն անէծք եղև և մեզ զօրհնութիւն ետ։ Եւ չշատացաւ այսու, այլ և ժողովուրդ իւր սեպհականեաց զորս ընդ անիծիւքն էաք. և այս քան զյանիծիցն ազատելն յոյժ առաւել է։ Դարձեալ այլ ևս առաւելութիւն. որպէս զմեզ լինելն՝ և 'ի մեզ բնակելն, որ կարի գերագոյն է քան զժողովուրդն լինել մեզ նմա։ Եւ քան զայս ևս մեծագոյն է՝ զերկիրս երկին առնել, և զմարդիկ հրեշտակս։ Եւ 'ի վերայ սոցունց կարի անչափ է գերամբարձութիւն՝ զի զոր հրեշտակք բազում երկիւղիւ պաշտեն, և զերգսն զոր նոքա մեծաւ ահիւ աղաղակեն, զայն մեզ համարձակապէս ընդ նոսին երգել շնորհեաց. որպէս ազգակից և մարմնակից սիրով վստահել 'ի պաշտօնն։ Արդ զմնացեալ բանն տեսցուք մասնաւորաբար։

« Զի որում ոչն համդուրժէին առաջի կալ զուարթնոցն Ջոկք »։ Զուարթունք կոչին վերինքն, վասն միշտ 'ի զուարթութեան և յուրախութեան գոլոյն աստուածային տեսութեամբքն, և բարեգութ նորա խնամովքն, որք զատեալք դաս դաս 'ի միմեանց կարգեալք կան 'ի պաշտամանն Աստուծոյ. զորս Ջոկս բանն կոչեաց։ Եւ զի ասաց՝ թէ ոչ համդարտէին առաջի կալ, վասն զի Եսայի և Եզեկիէլ մարգարէք, մին զսե-

րովբէիցն և միւսն զքերովբէիցն զհանգամանսն որչափ կարացին առնուլ՝ պատմեցին մեզ, ահագնեալք զնոսա յոյժ զարհուրանօք։ Զի Եզեկիէլ պատմէ զքերովբէիցն զթևսն տարածեալս 'ի վերայ գլխոցն և բովանդակ անձանցն, զի որպէս 'ի սաստիկ յահէ ընդ թևօքն ասէ սալարէին։ Իսկ Եսայի՝ զսերովբէիցն նոյնպէս զվեց թևսն բաժանեալ յերկուս երկուս, կրկնապատիկ զերեսսն և զոտսն ամրացուցեալ յաստուածային հրոյն, և միշտ ընդոստուցեալ 'ի սաստկութենէ ահագին տեսութեանցն՝ յիրեարս ծպտեալ՝ և երկիւղալից բարբառով աղաղակ առ իրեարս եղեալ. վասն այսր ասէ, Ոչ հանդարտէին առաջի կալ. այսինքն թէ ոչ ժուժէին։

« Զարհուրեալք 'ի փայլակնացայտ և յահեղ լուսոյ « աստուածութեանդ »։ Քանզի լոյս ահեղ աստուածութեանն փայլատակունս ցայտէ անհանդուրժելիս, և յար սոսկումն և զարհուրանս և պակուցումն նոցա առնէ։

« Եղեալ այդպիսիդ մարդ յաղագս մերոյ փրկու« թեան »։ Թէ որ այդպիսի ահաւոր և անտանելի փառօքդ էր՝ վասն զմեզ փրկելոյ մարդ եղև, ինքն 'ի մեր աղքատութիւնս իջեալ, և մեզ զիւր աստուածութիւնն շնորհեաց. այլ առ անգամ մի ոչ զայս դնէ, այլ զայն՝ թէ հրեշտակաց հաւասարակից արար։

« Շնորհեաց և մեզ, ասէ, ընդ երկնայինսն պարել » ընդ հոգեղէն պարսն ». պարելն՝ դասակցել է. զերկրայինսս ասէ և զհողեղէնսս՝ ընդ երկնայինսն և ընդ հոգեղէնսն կցորդակցեաց. շնորհօք զայս՝ և ոչ ըստ արժանեաց տուեալ, այսինքն՝ ներելով, ողորմութեամբ, անյիշաչարութեամբ, զի այս է շնորհեաց ասելն։

« Ընդ սերովբէսն և ընդ քերովբէսն միաձայն սըր» բասացութեամբ յօրինել նուագս »։ Նուագ՝ երգոյ է անուն. միաձայնելն՝ զնոյն երգել զոր նոքայն. սըրբասացութեամբ, զնոյն ասել զերեքսրբեան օրհնութիւնս՝ զոր սերովբէքն երգեն. և յօրինել՝ ըստ նոցա յօրինուածութեանն կազմել։

« Համարձակապէս բարբառով աղաղակել ընդ նո» սին, և ասել ». վասն զի եղբայր մեր եղև տէրն փա-

ուաց, առաւել քան զսերովբէսն՝ ընդ նոսա կալով՝ զսրբասացութիւնսն բարբառիմք։

«Սուրբ սուրբ սուրբ, Տէր զօրութեանց»։ Երեք, ըստ երից անձնաւորութեանցն, Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. և մի Տէր, քանզի մի յերեսին է տէրութիւն աստուածութեանն. տէր զօրութեանց, այսինքն՝ հրեշտակաց, զի հզօրք են զօրութեամբ, և զի զօրք են թագաւորին երկնից։

«Լի են երկինք և երկիր փառօք քո»։ Երկինք երկնայնովքն և երկիր երկրայնովքս՝ զքո փառսդ բարձրացուցանեն, ոչ միայն 'ի ձեռն բանաւորաց և մտաւորաց՝ այլ 'ի ձեռն ամենայն բնութեանց, որք գոյութեամբ իւրեանց պատմեն զփառս Աստուծոյ։ «Օրհնութիւն 'ի բարձունս» Հօր, որում ասեմք Հայր երկնաւոր. թէպէտ ոչ միայն 'ի բարձունս է այլ ամենայն ուրեք, այլ զի որ անդն են՝ կամարարք նորա ամենեքին են՝ վասն այնորիկ անդ լինել ասեմք։

«Օրհնեալ որ եկիր և գալոցդ ես անուամբ Տեառն»։ Որդւոյ ասէ՝ որ եկն 'ի փրկել զարարածս, և գալոց է դատել զազգս մարդկան. անուամբ Տեառն, վասն զի յանուն Հօր իւրոյ եկն, որպէս և ինքն իսկ ասաց, թէ Ես եկի յանուն Հօր իմոյ. և դարձեալ զինքն տէր անուանեալ է, և է իսկ տէր։

«Օրհնութիւն 'ի բարձունս». այսինքն յերկինս՝ Հոգւոյն սրբոյ, որոյ գալուստն 'ի Տէրն՝ 'ի Յորդանան, և 'ի վերնատունն յառաքելսն՝ 'ի յերկնից ցուցաւ։

Այլ զի Փրկչին ասեմք զօրհնութիւն 'ի բարձունս, որպէս Հօր և Հոգւոյն սրբոյ, 'ի խոնարհելոյ նորա առ մեզ՝ յօժարեմք օրհնել զնա, զմանկանցն հնչեցեալ ձայն. զի որպէս նոքա՝ 'ի յովանակին տեսեալ զնա՝ ասէին, Օրհնեալ եկեալ անուամբ Տեառն, դաւթեան ձայնիւն յաւելադրեալ, նոյնպէս և մեք 'ի սուրբ սեղանն՝ ականատես նորա լեալ, պատուական նորա մարմնոյն և սուրբ արեանն զնա օրհնեմք։

Ճշմարտապէսն՝ զստոյգն ասէ, և ամենասուրբն՝ զամենայնիւ սուրբն. և սուրբ է փառաւորեալ. զի որ առանց ամենայն պակասութեան ունի զփառսն՝ ճշմարտապէս փառաւորեալ է, և ամենայնիւ փառաւորեալ։ Ըստ մեզ՝ սուրբն մաքուր ասի. այլ երանելին վարդա-

պետքն մեր յայսմ Նուագի՝ փառաւորեալ զասելն 'ի հրեշտակաց մեզ ծանուցեալն։ « Եւ ո՞ ոք պանծասցի բա-
» նիւ բովանդակել զքո 'ի մեզ զանբաւ բարերարու-
» թեանդ զեղմունս »։ Զի՞ք ոք ասէ որ պանծասցի բովանդակել և ասել բանիւ, թէ զամենայն լիով զքո 'ի մեզ զբարերարով զեղեալսդ՝ ոչ ոք կարէ պարծել թէ ասիցէ, զի անբաւ և անբովանդակ է։ Գործելն է առաւել քան զգթալն, զոր ջերմն սիրով 'ի վերայ ծննդոցն ցուցանեն ծնօղքն մեծաւ խանդաղատանօք. զոր ոչ միայն 'ի մարդիկ, այլ բազում անգամ և յայլ կենդանիս է տեսանել. որպէս 'ի հաւուցն՝ առ ճտքն և առ Երուսաղէմ Տէրն առակէր։ Արդ ասէ զանչափ զբարեյորդոր զեղեալսն 'ի մեզ, զի ոչ միայն զի յաճախ է՝ գոհանալ պարտիմք, այլ առաւել զի 'ի ջերմն սիրոյ և 'ի սաստիկ գթոյ՝ և յանպատում գործոյ գըգուեալ յաճախեաց զբարիսն. և վասն զի աղքատ էր մեր բնութիւնս և չունէր ինչ զի ընծայատուր Աստուծոյ լիցի, և առաջի եղեալ Աստուծոյ՝ զբարերարութեանցն գոհասցի, յաղագս այսորիկ ոչ կամեցաւ Աստուած չքաւորս յայս լինել մեզ. այլ անկշռելի և անեզրական սիրով պատրաստեաց զիւր միածին որդին տալ մեզ, զի հարուստք լեալ նովաւ՝ զնա առաջի դիցուք Աստուծոյ, և նովաւ զբարեացն 'ի մեզ եղելոց՝ գոհասցուք։ Վասն այնորիկ 'ի հանելն զպատարագն 'ի սեղանն՝ սկիզբն առնեմք յիսկզբանցն գոհանալ։ Բայց նախ խոստովանի բանս, թէ չկայ յոք կար՝ զբովանդակ բարերարութիւնսն 'ի մեզ եղեալս՝ բանիւ յառաջ բերել. և ապա սկսանի զգոհութիւնսն։

« Որ և անդէն իսկ 'ի նախնումն զանկեալն 'ի մեղս
» զանազան յեղանակօք խնամեալ սփոփեցեր »։ Յառաջինսն՝ զոր 'ի նախնումն կոչեաց՝ զբնութիւն մարդկան՝ զանկեալն 'ի մեղս, պէսպէս խնամօք մխիթարեցեր ասէ. զի սփոփելն՝ մխիթարել է, և զանազանն՝ պէսպէս։ Իսկ յեղանակօքն՝ դարձուածօք է. զի երբեմն երկայնակեցութեամբ լաւ և պիտանի հարցն՝ զգնացս արդարութեան ուսուցանէր ծննդոցն. էր զի և զհաճոյսն պատուէր շնորհիւ, որպէս զԵնոք փոխմամբն. և էր երբեմն՝ զի զյանցուցեալսն պատժէր, որպէս զԿայէն, և որ առ ջրհեղեղաւն, և զՍոդոմայե-

ցիմն. զի և այս խնամք են Աստուծոյ՝ պատժելն և կարճել 'ի մեղաց, և այլոցն տալ զգուշութիւն։ Դարձեալ և ուխտադիր ընդ արդարսն լինելով և փրկող նոցին, որպէս Նոյի, Աբրահամու և զաւակի նորա, որպէս Ղովտայ, Յակոբայ, բովանդակ արդարոց և որդւոցն Իսրայէլի՝ զորս յԵգիպտոսէ փրկեաց և յանապատին խնամարկեաց, և որոց զօրէնսն ետ, յորոց և զմարգարէսն յարոյց, որոց և զերկիրն աւետեաց պարգևեաց, որոց զքահանայութիւն և զթագաւորութիւն ետ, որոց զողջակէզսն, զզոհսն և զնուէրսն պարգևեաց. զի մինչև գայցէ Ճշմարտութիւնն՝ ստուերաւն Ճշմարտութեան մխիթարեսցին. Նաև հրեշտակօք խօսեցաւ, և ազգի ազգի նմանութեամբք ինքն իսկ Աստուած երևեցաւ. և զի ըստ ազգաց պահապանս յիւրոց հրեշտակաց կարգեաց։ Զայս և որ սոցին նման այլս բազումս՝ միով բանիւ ընծայեցոյց՝ յասելն, թէ «Զանազան յեղանակօք խնամեալ սփո-
» փեցեր. մարգարէիւք, օրինացն տուչութեամբ, քա-
» հանայութեամբ, և ստուերակերպ երինջոցն մատուց-
» մամբ». զի ամենայն մատուցեալքն 'ի հնումն՝ թէ վասն մեղաց, թէ վասն փրկութեան, թէ 'ի գոհութիւն, Քրիստոսի պատարագելոյն էին օրինակք։ Եւ երինջքն այրեցեալք՝ որոց մոխիրն սրսկէր զպղծեցելովքն, զայժմու մաքրութիւնս՝ որ Քրիստոսի մկրտութեամբն և պատարագաւն՝ տպաւորէր. վասն որոյ ասէ առաքեալ. Զստուեր հանդերձելոց բարեացն ունէին օրէնքն, և ոչ զնոյն կերպարանս իրացն։ Ստուեր ասի՝ զոր շուք մեք կոչեմք, որ անկանի 'ի մարմնոյ, եթէ 'ի կենդանւոյ և եթէ յայլ ինչ իրէ։ Եւ հանդերձեալ բարիս՝ զայժմուս ասէ, որ Քրիստոսիւ յայնժամ մեզ հանդերձեալ էր լինել. զոր յայլում թղթի ևս յայտնագոյն ասէ Պօղոս. զօրինականսն[1] տուեալ՝ որ են ստուերք հանդերձելոցն, այլ մարմինն Քրիստոս է, զի ուսցիս 'ի Քրիստոսէ անկեալ զստուեր օրինացն, որ զօրինականսն փոփոխեաց. և ծանիցես՝ թէ որչափ 'ի մէջ է ընդ ստուեր. և յորմէ ստուերն անկանի, այնքան է միջոց օրինացն և շնորհացս որ մեզս պարգևեցաւ։

1 Ա. յապէս յ՚00։

« Իսկ 'ի վախճան աւուրցս այսոցիկ զբովանդակ իսկ » զպարտեաց մերոց խզեալ զդատակնիք » ։ Վախճան աւուրց կոչէ, զի ըստ վեցօրեայ աւուրցն արարչութեան վեց հազար ամք աստի կեանքս ցուցանի, և յեօթներորդումն լինի հանդերձեալ կեանքն ։ Արդ զի 'ի վերջին հազարին շնորհքն Աստուծոյ Քրիստոսիւ յայտնեցաւ 'ի վեցերորդին, և այլ լրումն հազարի յետ սորա ոչ է, վասն այսորիկ վախճան աւուրց հազարամեայ աւուրցն կոչէ, վերջ հազարացն ցուցանելով. զոր և Պօղոսի յայտ արարեալ ասէ. Ի վախճան աւուրցս այսոցիկ խօսեցաւ ընդ մեզ Որդւովն ։ « Զբովանդակ իսկ ըզպարտեաց մերոց խզեալ զդատակնիք ». բովանդակն՝ ամենայն կոչի. պարտս՝ զյանցանսն ասէ. զոր և Տէրն ուսոյց՝ յաղօթսն խնդրել, թէ թող մեզ զպարտս մեր. դատակնիք կոչի՝ զոր գրեն թագաւորք զվնասակարացն և կնքեալ պահեն, մինչև հատուսցեն ըստ յանցմանն ։ Ըստ որում նմանութեան և մարդկան բնութիւնս յառաջին մարդոյն մինչև 'ի Քրիստոս՝ որպէս գրով և կընքով պահիւր յոր վրէժխնդրութեան ապստամբութեանցն, խորհուրդք և բանք և գործք, որ Քրիստոսիւ խզեալ լինի կնիք դատին ։ Վերստին արդ զբանէն բուռն հարցուք ։

« Իսկ 'ի վախճան աւուրցս այսոցիկ զբովանդակ իսկ » զպարտեաց մերոց խզեալ զդատակնիք, զքո միա- » ծինդ ետուր մեզ պարտապան և պարտս ». խզեցեր ասէ զդատակնիքն՝ ոչ բռնամբ, այլ իրաւամբք. զի մի վրիպանք արդար դատողութեանդ քոյ լինիցի. այլ կացուցեր մերոց մեղացն պարտական՝ ոչ 'ի հրեշտակաց և ոչ 'ի սրբոց, այլ զքո միածինդ ։ Դարձեալ զառաւել սէրն յիշելով գոհանայ, թէ զոր միայն էիր ծնեալ՝ զնա մեզ պարտապան ետուր, որ ոչ այլով իւիք՝ այլ ինքեամբ զպարտս մեր հատոյց. Տէր հատուցանող ընդ իմ եղեալ, ըստ Դաւթի. և պարտք՝ ըստ Եսայեայ. Տէր մատնեաց զնա առ մեղս մեր. և ինքն Տէրն ասէ. Այնպէս սիրեաց Աստուած զաշխարհ՝ մինչև զորդին իւր միածին ետ ։ Եւ Պօղոս, թէ Յիւր որդին ոչ խնայեաց, այլ վասն մեր ամենեցուն մատնեաց զնա ։

« Զքո միածինդ, ասէ, ետուր մեզ պարտապան և

» պարտս, զենումն և օծեալ, գառն և երկնաւոր հաց, » քահանայապետ և պատարագ »: Ոչ միայն պարտապան և պարտք զքո միածին ասէ ետուր, այլ զենումն և օծեալ, զի փոխանակ օծելոց քահանայապետացն՝ զդա ետուր մեզ լինել՝ օծեալ և քահանայապետ, և զենումն և գառն պատարագի, և հաց առաջաւոր. քանզի յօրինականսն իմն քահանայապետքն ընդ առաւօտս և ընդ երեկոյս գառինս հանապազորդս մատուցանէին, և ըստ աւուրց՝ զառաջաւորաց 'ի սեղանն կարգէին. և զժողովրդոցն զիւրաքանչիւրոցն մատուցանէին զնուէրս. և անասնոցն արեամբ՝ զմարմնոցն աւետաւորէին զսրբութիւն: Իսկ քո միածին մեզ՝ ամենայն ինքն լեալ, ոչ զմարմնոյ ևեթ մաքրէ զպղծութիւն, այլ բովանդակ զհոգւոյ և զմարմնոյն մաքրէ, ոչ առակաւ և ստուերաւ, այլ ճշմարտութեամբ. որպէս և ինքն իսկ ասաց. Ի վերայ նոցա ես սուրբ առնեմ զանձն իմ, զի եղիցին և նոքա սրբեալք ճշմարտութեամբ. և յասելն ճշմարտութեամբ՝ յայտ արար թէ առաջին սրբիչքն օրինակօք էին և ոչ ճշմարտութեամբ: Արդ ասացեալ թէ զքո միածին ետուր մեզ պարտապան և պարտս, զենումն և օծեալ, որ զզենումն զենոյր, գառն և երկնաւոր հաց, քահանայապետ և պատարագ, յարէ 'ի նոյն. «Վասն զի դա է բաշխօղ և » նոյն ինքդ բաշխի 'ի միջի մերում՝ միշտ և անծախա- » պէս »: Զայս ամենայն Պօղոս յաճախապէս յեղյեղէ թէ Քրիստոս եղև քահանայապետ, և թէ ինքն մատոյց պատարագ, և իւրով արեամբն եմուտ 'ի սրբութիւնսն յաւիտենական, և թէ ունիմք մեք սեղան՝ ուստի ոչ ունին իշխանութիւն ճաշակել որք զխորանին պաշտեն զպաշտօն. յայսմ սեղանոյ է բաշխիչն Քրիստոս, և ինքն է որ բաշխին. զի որպէս 'ի վերնատանն յառաքեալսն բաշխեաց և բաշխեցաւ, նոյնպէս և յայնմ օրէ մինչև ցայսօր՝ յամենայն եկեղեցիս ամենայն հաւատացելոց նոյն ինքն բաշխէ և բաշխի և ոչ սպառի. վասն այնորիկ ասէ թէ բաշխի 'ի մեզ անծախապէս: Ապա և զօրինակն ևս այսպիսի շնորհաց յայտ ածեալ ցուցանէ, թէ զիա՞րդ է քահանայապետ և պատարագ և օծեալ և երկնաւոր հաց, և բաշխիչ և բաշխումն. այսպէս ասելով.

« Վասն զի եղև հաստատապէս և առանց ցնորից մարդ »։ Ոչ ցնորիւք ասէ, այսինքն կարծեօք, այլ ըստուգապէս մարդ եղև։

« Եւ անշփոթ միութեամբ մարմնացաւ ՚ի սուրբ և » յաստուածածին կուսէն Մարիամայ »։ Միացաւ ասէ ՚ի մարմին անշփոթաբար. զի ոչ փոխարկումն կամ ՚ի բաց բարձումն արար աստուածային կամ մարդկային բնութեանցն, այլ միացոյց զբնութիւնսն, ըզնոյն գոլ Աստուած և զնոյն մարդ. որպէս զի բանն Աստուած՝ մարմին [1], որ ՚ի կուսէն մարմնացաւ՝ Աստուած, և նոյն ինքն՝ Աստուած և մարդ, և Մարիամն՝ որ ծընաւն զԱստուած Բանն՝ աստուածածին և կոյս։

« Ճանապարհորդեցաւ ընդ ամենայն կիրս մարդկային » կենցաղոյս առանց մեղաց »։ Ճանապարհ՝ զկենցաղս կոչել սովոր են գիրք, ընդ որոյ Քրիստոս ընդ վարմանց ասէ, և ոչ մեղաւ, զբովանդակ զմարմնոյ կրեալ զկիրս. այս է՝ ծնաւ, սնաւ, քաղցեաւ, ծարաւեցաւ, աշխատ եղև, եկեր, արբ, զգեցաւ, հոգաց, տրտմեցաւ, արտասուեաց, և որ այլ ևս ՚ի մարմնի բերի՝ յանձն էառ. և ազատ ՚ի մեղաց մնալով՝ յաղթօղ մարմնականաց սխալմանցն արար։

« Եւ յաշխարհակեցոյցն և յառիթն փրկութեան » մերոյ եկեալ կամաւ ՚ի խաչն ». առիթն պատճառ է, և զխաչելութիւնն՝ կենաց աշխարհի և փրկութեան մարդկան պատճառ Տէրն եցոյց. վասն որոյ և գոհանալով՝ բանն աշխարհակեցոյց և առիթ փրկութեան մերոյ զխաչն կոչէ։

« Առեալ զհացն յամենասուրբ ՚ի կենդանարար ՚ի » ձեռսն իւր »։ Ամենասուրբ արդարև էին ձեռքն աստուածային. և կենդանարար, զի ՚ի ստեղծմանն կենդանութիւն յայնմանէ մարդկան տուաւ. և որ ՚ի նորոգումն կենաց եղև նորոգումնս՝ նովին շնորհեցաւ։ Զի նոյն ձեռք է որ զԱդամն գոյացոյց. Թէ և անմարմին յայնժամ՝ որ այժմս մարմնով. նոյն ամենակար և ամենակեցոյց ձեռք՝ որ զհողն մարդ հոգևոր և բանական փոխադրեաց, զհացն առնլով՝ մարմին աստուածային փոխարկեաց. անդ զմարդկայինն միացուցեալ

1 Այլ Օ. մարդ։

զոգի, և 'ի սա՛ զաստուածայինն միացուցեալ բնութիւն. անդ ասէ փչել զհոգին յերեսս, որ է Հոգին սուրբ, ստեղծու 'ի մարդումն զկենդանական շունչն. և աստ ասէ, Առեալ զհացն օրհնեաց. և է օրհնելն՝ զՀոգին սուրբ տալ 'ի նա. որ 'ի Մարիամն առաքեալ՝ զանճառելի տնօրէնութիւնն 'ի նմա գործեաց, և միացոյց 'ի Բանն Աստուած զմարմինն՝ որ 'ի կուսէն, զի ըստ այնմ և զհացին միութիւն յորդին Աստուծոյ՝ հրաշագործեսցէ։

« Օրհնեաց, ասէ, գոհացաւ ». քահանայապետ մեր եղեալ, և զիւր մարմինն մատուցեալ պատարագ, իբր զմի 'ի մարդկանէ գոհանայ զԱստուծոյ բարերարութեանցն՝ որ առ ազգս մեր 'ի սկզբանէ մինչև ցյաւիտեան. և որպէս 'ի մարդկութենէս՝ զայսպիսի ընծայ տուեալ նմա տրիտուր։

Ապա ասէ. « Ետ իւր ընտրեալ աշակերտացն ասելով. Առէք կերայք 'ի դմանէ ամենեքեան, այս է » մարմին իմ, որ վասն ձեր և բազմաց բաշխի »։ Էին և այլ աշակերտք Տեառն, բայց գլխաւորք երկոտասանքն էին, զորս և ընտրեալս բանին կոչեաց, նոցա նախ զսուրբ խորհուրդն շնորհեաց։ Եւ զի ամենայն հաւատացելոց պարգևելոց էր՝ վասն այնորիկ յաւել զվասն բազմաց բաշխումն, ցուցանելով զոր յօրէ յայնմանէ մինչև 'ի կատարած աշխարհի անսպառութեամբ տալոց էր կերակուր ճշմարիտ հաւատացելոց։

« Ըստ նմին օրինակի և զբաժակն առեալ օրհնեաց, » գոհացաւ, ետ իւրոց ընտրեալ աշակերտացն ասելով. Առէք արբէք 'ի սմանէ ամենեքեան. այս է արիւն իմ նորոյ ուխտի, որ վասն ձեր և բազմաց հեղու 'ի քաւութիւն մեղաց »։ Սկիզբն արար Տէրն մեր պատարագիս, և ուսոյց, թէ որպէս պարտ է զսա գոհութեամբ կատարել. զի ոչ միայն զարարչութենէն, այլ և զհասարակաց մարդկան խնամոց և զփրկութեան գոհասցուք. այլ ընդ հասարակացն և վասն իւրաքանչիւրոց առանձինն բարեաց գտելոց յԱստուծոյ՝ սուրբ պատարագաւն երախտահատոյց լիցուք շնորհակալութեամբ. զի ոչ միայն փրկել և կեցուցանել զմեզ եկն, այլ և ամենայն կարգաց և կրօնից Տէրն մեր վարդապետ մեզ լինել։ Եւ արդ միտ դիր յիսկըզ-

բանցն. Ծնաւ, աղքատ զմայրն իւր ընտրեաց, զի դու մի՛ փախչելի համարեսցիս զաղքատութիւնն՝ զոր ամենեցուն Թագաւորն ախորժեաց. հալածեալ եղեւ յԵգիպտոս՝ տղայ գոլով, և բազում անգամ յորժամ սքանչելեօքն երախտագործէր՝ հալածեալ լինէր. զի դու մի՛ տաղտկայցես ընդ հալածանսն, և մի՛ զայրացիս՝ թէ և յերախտաւորաց ևս նեղիցիս. քանզի ոչ երբէք այնքան բարեգործել կարես՝ որքան նա որ Աստուածն և փրկիչն էր. և դարձեալ՝ ոչ այնչափ ազատ 'ի պարտեաց՝ որչափ նա որ անմեղն ամենայնիւ էր. այլ և ոչ պատուի և մեծարանաց՝ աւելի քան զորդին Աստուծոյ՝ զանձն արժանի մարթասցիս համարել: Զգեցաւ հանդերձ՝ ոչ 'ի պաճուճանս, այլ 'ի ծածկութիւն մարմնոյ. զի դու մի՛ աւելորդացն այլ հարկաւորացն զքեզ տայցես: Կերակրեցաւ և արբ, որպէս և զգեցաւ, ոչ փափկութեան զինքն տուեալ, այլ չափաւորապէս զպէտս մարմնոյն հատուցանէր: Եմուտ 'ի հարսանիս, և զխնդութեանն պայման եցոյց համեստութեամբն և սքանչելի ընծայատրութեամբն: Ցայտ արար և զարտասուաց և զսգոյ որքանութիւն, զսիրելին սգալով զՂազարոս: Նա և ուղեգնացաց ետ օրինակ, թէ որպիսեօք գրաստուք զաշխատութիւնն հանգուցանել պատշաճ է. վասն զի 'ի վերայ իշոյ և ոչ 'ի ձիոյ ոսկէսանձս երևելիս նստաւ: Վարդապետեաց դարձեալ՝ թէ որպէս 'ի փորձութիւնս պարտ իցէ աղօթել, կամ որպիսի հեզութիւն առ փորձողսն ցուցանել, և բարիս ընդ չարի փոխատրել, որպէս և ինքն զունկն ծառային բժշկեաց: Եւ արդ՝ որպէս այսոքիւք և այլովք ամենեքումբք իւր կենցաղականօք և մանաւանդ խոնարհութեամբքն ազգի ազգեօք՝ որ մինչև յոտից աշակերտացն լուացումն ուսուցանել կամեցաւ, այսպէս և զխորհուրդն ուսոյց, թէ որպէս պարտ է կատարել, օրհնութեամբ և գոհանալով. և զի զինքն մնալ մեզ պարտապան ախորժէ, և ոչ զմեզ իւր, յայն սակս 'ի գոհանալն մեր զԱստուծոյ՝ տայ մեզ փոխադարձեալ 'ի նոյն մեծաւ պատարագաւն. զի մեռելոց և կենդանեաց հատուցին պարտքն նովաւ, և պարտատուս և պարտապան մեզ նոյն ինքն Աստուած լինիցի:

Արդ 'ի տալ զբաժակն ցաշակերտսն ասէ. Այս է

իմ արիւն նորոյ ուխտի, որ վասն ձեր և բազմաց հեղու 'ի թողութիւն մեղաց. զայն յայտ առնէ որ 'ի խաչին հեղլոց էր, և բևեռելն և կողին խոցելն. և ոչ ասաց միայն արիւն իւր, այլ նոր ուխտ զնա անուանեաց. քանզի հին ուխտն որ ընդ Հրէայսն վասն պարգևական երկրին՝ անասնոց էր արեամբ. իսկ այս նոր ուխտս՝ իւրով պատուական արեամբն. յաղագս որոյ նախասաց եղև Երեմիայիւ՝ ուխտել ուխտ նոր, տալով զօրէնս իւր 'ի սիրտս և 'ի խորհուրդս մեր, Աստուած մեր լինել, և ժողովուրդ իւր զմեզ առնել, և այլ ոչ ևս յիշել զմեղս մեր և զանօրէնութիւն: Իսկ աստ իւր սուրբ բերանովն՝ ոչ այսքան միայն ասաց՝ զուխտեն իւրով արեամբն, այլ զայն ևս յաւել, թէ ուխտեմ ձեզ ես և Հայր զարքայութիւնն, և զլինելն ինձ ուրախակիցս. զի զուրախանալն ընդ նմին յայտ առնէ յասելն. Ուտիջիք և ըմպիջիք 'ի սեղան իմ՝ յարքայութեան Հօր իմոյ:

« Որ զայն միշտ 'ի յիշումն իւր առնել մեզ պատուիրանադրեաց, բարերար և մարդասէր Տէրդ »: Քանզի ասաց կենարարն, թէ Քանիցս անգամ թէ ուտիցէք զհացս և զբաժակս ըմպիցէք՝ զմահ իմ յիշեսջիք մինչև եկից ես. այս է զոր ասեմքն, թէ զայն զայս խորհուրդ զոր ինքն կատարեաց՝ և մեզ հրամայեաց առնել յիշատակ մահուան իւրոյ. միշտ, այսինքն հանապազ:

« Եւ իջեալ 'ի ստորին վայրս մահու ». ստորին՝ ներքին է վայր. զգերեզմանն կոչէ զայս, յորում աստուածային մարմինն եդաւ՝ զոր առ 'ի Մարիամայն. քանզի ասէ. « Եւ իջեալ 'ի ստորին վայրս մահու՝ իւրով մարմնովն, զոր ընկալաւ 'ի մերմէս յազգակցութենէ »: Ազգակից զսուրբ Աստուածածինն զՄարիամ անուանէ. և որպէս մարմնովն 'ի գերեզմանն էջ՝ ըստ այլոց մարմնոց, նոյնպէս և ոգւովն առ այլոց մեռելոց ոգիս չոգաւ, և յարութիւն բազում սրբոց շնորհեաց, և զզօրութիւն մահու ելոյծ: Վասն որոյ յարէ 'ի նոյն. « Եւ զնիգս դժոխոցն աղարտեալ հզօրեղապէս, ծանոյց զինքն հաւաստեաւ Աստուած կենդանեաց և մեռելոց ». զի որպէս արգելանաւ փակեալ ոգւոցն 'ի մարմնոյն դարձ, և մարմնոցն յարութիւն: Քանզի ըս-

պառնացաւ մահ Ադամայ, թէ ճաշակեսցէ 'ի պտղոյն. և զի յանցաւոր պատուիրանին գտաւ՝ 'ի մահ և 'ի մեղս գլորեցաւ զաւակօք. և ոչ գտաւ ոք 'ի մարդկանէ որ անմեղութեամբ զմահուն վճարէր զպարտս, եղև որդի Ադամայ՝ որդին Աստուծոյ՝ անպարտն մեղաց, և փոխանակ մեղաւորացս մեռաւ և պարտաւորացս. ապա արկ զիշխանութիւն 'ի վերայ մահու, խորտակելով զդրունս նորա, և հանելով 'ի նմանէ զըմբռնեալսն: Կարէր զայս և առանց իւրն մահու, որպէս զօրեաց առ Ղազարն, այլ ոչ կամեցաւ իշխանութեամբ փրկել միայն, այլ և իրաւապէս. որպէս ասաց ոմն 'ի մարգարէիցն. թէ Իրաւամբք փրկեսցի գերութիւն նորա և ողորմութեամբ. ողորմութեամբ՝ զի մարդ եղեալ մեռաւ վասն մեր. և իրաւամբք՝ զի անմեղին մահն մեղուցելոցս կենդանութիւն իրաւացուցէ: Այլ զի 'ի դէմս ած զբանն 'ի դրանցն արգելարանէ, զոր խորտակեալ ասէ, զի ցուցցէ թէ որպէս 'ի բանտի՝ որ խորտակին դրունքն և փշրին նիգքն, որպէս ասաց աղարտեալ. և մանաւանդ որ և 'ի վերայ բռնացեալն կապի անլոյծ կապանօք, չիք այնուհետև արգելականացն առ 'ի յարտաքս ելանելն խափան. ըստ նմին օրինակի և ոչ մեր յարութեանն լինիցի, Քրիստոսի զմահ լուծանելով: Եւ յայսմ ամենայնէ ծանուցաւ հաւատեաւ, այսինքն ստուգութեամբ, թէ որ մեռանն՝ Աստուած է կենդանեաց և մեռելոց. որպէս և ասէ առաքեալ. Քրիստոս մեռաւ և եկեաց, զի մեռելոց և կենդանեաց տիրեսցէ:

« Եւ արդ մեք, Տէր, ըստ դորին հրամանատուութե.
» յառաջ բերեալ զայս խորհուրդ փրկական մարմնոյ
» և արեան միածնիդ քոյ ». վասն զի հրամայեաց ասէ դա՝ զոր ինքն արար զնոյն և մեզ առնել. այն է զոր ասեմք՝ թէ ըստ դորին հրամանատրութեան յառաջ բերեմք. յառաջ բերելն՝ դնելն է 'ի սեղանն զհացն և զբաժակն, որ խորհուրդ է մարմնոյ և արեան որդւոյն Աստուծոյ. այս է խորհուրդն՝ զի ոչ ըստ տեսանելւոյն այլ իմանալւոյն է հաւատալն. զի տեսանի հաց և գինի, և իմանի մարմին և արիւն որդւոյն Աստուծոյ. և փրկական կոչէ, վասն զի փրկեցաք նովաւ և փրկիմք, 'ի կեալ և 'ի մեռանել:

« Յիշեմք զդորին որ վասն մեր՝ զփրկութիւնագործ
» զչարչարանսն » ։ Արդ յասելն՝ թէ յիշեմք որ վասն
մեր չարչարեցաւ դա, զմտաւ ածցուք՝ զի կապեցաւ
որդին Աստուծոյ վասն 'ի կապանաց մեղաց զմեզ ար-
ձակելոյ. դատապարտեցաւ 'ի պղծոց, զի զմեզ անդա-
տապարտս արասցէ 'ի դատէն զերկիր.. Թուք ընկա-
լաւ յաստուածային դէմսն և ապտակ 'ի ծնօտսն, զի
նորոգեսցէ զպատկերսն իւր զապականեալս 'ի մեզ.
կռուփս յանարատ 'ի գլուխն ընկալաւ ծածկութիւ,
զի բարձցէ յոգւոց մերոց զառագաստն խաւարի, և
զազգի ազգի չարչարանս ախտից. կատակեցաւ 'ի զի-
նուորացն ծիրանեաւ, փշեայ պսակաւն, եղեգամբն,
ընդ խաղ երկրպագութեամբն, զի զմեզ թագաւո-
րեցուսցէ ճշմարտապէս և աստուածացուսցէ, շնորհես-
ցէ մեզ հանդերձ փառաց, թագ արքայութեան, գա-
ւազան զօրութեան. անարգեցաւ 'ի Հերովդէէ, մորա-
կեցաւ 'ի Պիղատոսէ, զի պատուականս զմեզ արասցէ,
և զանցաւորութիւն կենացն յաւիտենականաց մեզ
պատրաստեսցէ ։

« Զկենդանարար խաչելութիւնն » ։ Վասն զի մե-
ռեալ էաք 'ի մեղս, մեռաւ 'ի խաչին և կենդանացոյց
զմեռելութիւնս մեր. վասն որոյ և կենդանարար կո-
չեմք զելումն նորա 'ի խաչն ։ « Զերեքօրեայ զանապա-
» կան զթաղումն ». զի ըստ մարգարէին՝ ոչ թողաւ
ոգի նորա 'ի դժոխս և ոչ մարմին նորա ետես զապա-
կանութիւն, այլ և զմեր հոգիս եհան 'ի դժոխոց, և
զմարմինս փրկեաց յապականութենէ ։ « Զերանելի ըզ-
« յարութիւնն ». Երանելի ասի 'ի գրոց ամենայն բա-
րեաւ բովանդակեալն. որ է երանելի ամենայնիւ, որ-
պէս նոյն ինքն Աստուած, որ ոչ միայն երանելի է այլ
և ամենայն երանութեանց տուօղ. զի մարդ և մարմին
գոլով՝ Աստուած ճշմարտապէս ցուցաւ յարութեամբն ։
« Զաստուածապէս համբարձումն ». զի զհողեղէն բը-
նութիւնս յաստուածական աթոռն վերացոյց, և ըզ-
մեզ ընդ իւր յարոյց և նստոյց յերկնաւորսն ։

« Զահաւոր և զփառաւորեալ զմիւսանգամ գա-
» լուստն » ։ Ահաւոր է արդարև և ահագին և փառա-
ւորեալ և սոսկալի գալուստն այն. զի փառօք Հօր գայ-
ցէ և ամենայն հրեշտակօք, և 'ի դատաստան ժողո-

վեսցէ զամենայն բնութիւնս մարդկան. և հատուսցէ ըստ իւրաքանչիւր գործոց, փառս անպատումս արդարոցն շնորհելով մշտնջենաւորապէս, և խոշտանգանս դառինս յաւիտենականս՝ մեղաւորացն:

Արդ ասեմք թէ յիշեմք զայս ամենայն և գոհանամք. Նուէր այսպիսի և ընծայ բարեաց փոխադարձեալ զպատարագս սուրբ. և սովաւ աղաչեմք ապրիլ 'ի հանդերձեալ դատաստանացն: Վասն որոյ և համաձայնեն առաջի կացեալքն, թէ «Ցամենայնի գովեմք զքեզ». այսինքն թէ ընդ ամենայնի գովեմք զքեզ: «Օրհնեմք զքեզ, գոհանամք զքէն, աղաչեմք զքեզ, Տէր Աստուած մեր»: Զայս բանս զոր երգով ասէ ժողովուրդն՝ կրկնէ քահանայն, և ցուցանէ զմիտսն, այսպէս ասելով.

« Զքեզ արդարև Տէր Աստուած մեր գովեմք, և ըզքէն գոհանամք, որ զօրհանապազ զանց արարեր ըզմերովք չարագործութեամբք»: Գովեմք, ասէ, զքո քաղցր և զանոխակալ և զբազմագեղ և զբազմագութ ներողութիւնդ, և գոհանամք զառատապարգև բարերարութեանցդ քոց. զի մեք հանապազ յանցանեմք խորհրդովք, բանիւք և գործովք, և դու ոչ հայելով յայն՝ վրէժս հատուցանես, այլ զանց առնես, որպէս թէ ոչ տեսանելով՝ այնպէս ներես. և ոչ միայն զյանցանքն և զչար գործովքն զանց առնես, այլ և խնամս և ողորմութիւնս ցուցանես. և ոչ 'ի մարմինն միայն այլ և 'յոգի. ոչ փոքումբք՝ այլ և մեծամեծօք. զոր և ցուցանէ յաջորդաւս.

« Որ այսպիսի ահաւոր և անպատում խորհրդոյս կարգեցեր սպասաւորս». անպատում ասի սուրբ խորհուրդն, վասն զի բան չկարէ որպէս էն յայտնել. և ահաւոր է՝ ոչ միայն մարդկան այլ և հրեշտակաց:

« Ոչ յաղագս մերոց ինչ բարեգործութեանց՝ յորոց յոյժ թափուր միշտ և ունայն գտանիմք հանապազ, այլ 'ի քո բազմագեղ ներողութիւնդ ցանկ ապաւինեալ՝ համարձակիմք մերձենալ 'ի սպասաւորութիւն մարմնոյ և արեան միածնի քոյ»: Եւ վասն զի ահաւոր է՝ և մեք սպասաւորել համարձակիմք[1],

1 Այլ ՕՕ չհամարձակիմք:

ոչ զի բարիս ինչ գործեցաք՝ վստահանամք, այլ 'ի բազում և 'ի լցեալ և 'ի զեղեալ բարերարութենդ ցանկ ապաւինեալ. այսինքն համապազ համարձակիմք մերձենալ 'ի սպասաւորութիւն մարմնոյ և արեան միածնիդ քոյ: Եւ ընդէ՞ր համապազ 'ի սպասաւորութիւն խորհրդոյն ասէ. վասն զի կատարել զխորհուրդն չէ մեր, այլ որպէս Յովհան Երանելին ասէ, մեք սպասաւորաց աստիճան ունիմք. և սրբէ և վերստին կազմէ նա. զՔրիստոսէ ասէ. քանզի մեք հանեմք 'ի սեղանն և 'ի սպասու կամք, գոհանալով զբարերարութեանցն Աստուծոյ. իսկ միացուցանել ընդ ինքեան զհացն և կենսատու առնել՝ Քրիստոսի է գործ:

### Խաղաղութիւն ամենեցուն. Աստուծոյ երկրպագեսցուք[1]:

### Այս ասէ քահանայն:

« Երկիր պագանեմք և աղաչեմք և խնդրեմք 'ի քէն,
« Տէր, առաքեա 'ի մեզ և յառաջի եդեալ յընծայս
» յայս՝ զմշտնջենաւորակից քո և զէակից սուրբ Հո-
» գիդ »: Երկիր պագանեմք և աղաչեմք և խնդրեմք 'ի քէն, Տէր. վասն է՞ր ասէ 'ի քէն, այսինքն թէ 'ի քէն խնդրեմք երկրպագութեամբ՝ և աղաչեմք, որ արարիչդ ես և հայր, որ յաւիտեանցն մարդասէր և բա-

1 Յաւելումն նոր 00:
Ժողովուրդն. Եւ ընդ հոգւոյդ քում:
Սարկաւագն. Աստուծոյ երկրպագեսցուք:
Ժողովուրդն. Առաջի քո, Տէր:
Քահանայն խոնարհեալ երկրպագէ սեղանոյն և ասէ զաղօթս:

Պարտ է գիտել, զի ամենայն բանք աղօթից որ մինչև ցայս պատմեցաւ 'ի քահանայէն, այնպիսի է, զոր օրինակ եթէ յիշխանաց ոք յաղագս յանցանաց իւրեք բարկանայ ծառայի իւրոյ, և ոմն 'ի սիրելեաց իշխանին կամիցի 'ի հաշտութիւն ածել զնա ծառային, նախ աղերսէ՝ զի հաշտեսցի, և զկաշառն ընդունիցի՝ զոր ետ ծառային. և իբրև զայն առնու՝ գիտէ այնուհետև զի հաշտեալ է այժմ, նախ գոհանայ զնմանէ, և ապա համարձակի զայլ ևս խնդրուածն խնդրել 'ի նմանէ: Նոյնպէս և այժմ միջնորդաբար քահանայս պատմեաց նախ զամենայն տնօրէնութիւն Քրիստոսի, որպէս այսօր այն ամենայն կատարեցաւ, և ետ զընծայսն 'ի Հայր. իբրև սա և հաճեցաւ Հայրն, զնմանէ գոհացաւ. իսկ այժմ համարձակի այլ իմն խնդիրս առնուլ 'ի նմանէ: Եւ զի՞նչ իցէ խնդիրն. այս է:

բերար և գթած մարդկութեանս եղեր, որ ոչ միայն զարարածս 'ի պէտս մեր հաստատեցեր, այլ և զքո մի և սիրելի որդիդ՝ ետուր մեզ փրկանք և փոխանակ. և զնոյն ինքնդ 'ի սեղան դնես և կերակրես զմեզ դովիմք. վասն որոյ ապաւինեալ յանքաւ քո բարերարութիւնդ՝ զՀոգիդ սուրբ առաքել խնդրեմք 'ի մեզ և 'ի պատարագս, զի և զմեզ Հոգիդ սուրբ սրբեսցէ:

« Որոյ զհացս օրհնեալ՝ մարմին ստուգապէս արա-
» ցէ Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի. և
» զբաժակս օրհնեալ՝ արիւն ստուգապէս արասցէ
» Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի » [1]: Զի մարմնացաւ փրկիչն 'ի Մարիամայ կուսէն. Հոգին սուրբ առաքեալ 'ի Հօրէ՝ առ մարմին 'ի յարգանդէն Մարիամայ, և խառնեաց և միացոյց 'ի Բանն Աստուած, որ և մի որդի և Աստուած ծնեալ 'ի Նմանէ յայտնեցաւ. զնոյն և յեկեղեցւոջ և 'ի սուրբ սեղանն գործէ Հոգին սուրբ. առեալ զհացն միացուցանէ յորդին Աստուծոյ, նոյնպէս և զբաժակն, և լինի մարմին և արիւն Քրիստոսի ճշմարտապէս: Զնոյն զայս հայցեմք և հաւատամք լինել, զի անսուտ է բանն Քրիստոսի. որ ասաց մինչև 'ի գալուստն իւր առնել յիւր յիշատակ զայս սկզբնաւորեալս յիւրմէ: Այլ զի ասեմք զՀոգին սուրբ մշտնջենաւորակից և էակից, խոստովանիմք միշտ առ Հօր և ընդ Հօր: Որպէս Հայր՝ էր և է և միշտ է, և չիք ժամանակ զի չէր, նոյնպէս և Հոգին սուրբ միշտ ընդ Հօր և ընդ Որդւոյ էր և է մշտնջենաւոր և էակ. որ և զայսպիսի մեծամեծս հրաշագործէ. զլոկ հացն և զգինին՝ յանապականութիւն մարմնոյ և արեան որդւոյն Աստուծոյ փոփոխելով:

« Որպէս զի եղիցի սա մերձեցելոցս՝ յանդատապար-
» տութիւն, 'ի քաւութիւն և 'ի թողութիւն մեղաց »: Հաւատով հայցեալ զէջս Հոգւոյն սրբոյ 'ի սուրբ պատարագն, ըստ տէրունեան բանին՝ կենդանարար մարմին և արիւն խոստովանիմք, և աներկբայ սրտիւք սկը-

1 Վասն կոչման Հոգւոյն սրբոյ 'ի փոխարկութեան նիւթոց խորհրդոյ պատարագին, և առ այս վարդապետութեան Ս. Հարց և մերոցս ոմանց, արարեալ է մեր ծանօթութիւնս 'ի տպագրութեան պատարագամեկնչի Ներս. Լամբրոնացւոյ (յէջ 391). անդր հրաւիրեմք զընթերցողս լուծման:

տանիմք 'ի խնդրուածս. զորդին Աստուծոյ 'ի վերայ որքոյ սեղանոյն՝ աներկբայ և աներկեան մտօք զխոստացեալ, զմեռելութիւնն իւր՝ որ վասն մեր՝ ականատես մեզ առնելով. քանզի այսուհետև այն մարմինն լինի՝ որ 'ի խաչին և 'ի գերեզմանին: Որով և զկենդանեաց և զմեռելոց հայցեմք զփրկութիւն. նախ առաջին զայս խնդրելով, զի անդատապարտ մնայցեմք սպասաւորելով ահաւորացն. և զի 'ի թողութիւն մեղաց լիցի մեզ մերձեցումն 'ի նա. վասն այնր ասէ, թէ մերձեցելոցս. զի անարժանիցն և կանխ մերձ և հաղորդելոյն՝ դատաստան է. և յաղագս այնորիկ արտաքս ելանեն անպատրաստքն, զի մի դատապարտեսցին՝ աղտեղի հոգւով յաստուածայինն մտանելով յառագաստ: Եւ քանզի անբիծ ոչ ոք գտանի՝ աղաչեմք զի թողցին յանցանքն մեր՝ գիտութեան և անգիտութեան, Քրիստոսի պատարագելոյն: Զի ոյք խիղճ զանձանց գիտեն, և ոչ էին խոստովանութեամբ և ապաշխարութեամբ սրբեալ՝ զնոսա առաջին քարոզն տրոհեաց. իսկ որ չար խղճիւ ոչ էին և կամ ապաշխարեալ ըստ գրոց, և 'ի ներքս մնացին, և նոքա յահին և 'ի դողման պարտին լինել. վասն զի հանապազ ընդ սխալանօք ըմբռնիմք, խորհրդովք, բանիւք, գործովք, կամաւ և ակամայ, գիտութեամբ և անգիտութեամբ. և յաղագս այսորիկ պաղատանս հառաչանօք և ջերմեռանդն արտասուօք մատուցանելի է, զի մաքրեսցին յամենայնէ՝ և սուրբք 'ի մաքուրն մերձեսցին [1]:

«Սովաւ շնորհեա զսէր, զհաստատութիւն և զըղձալի
» զխաղաղութիւն եկեղեցւոյ քում սրբոյ»: Սովաւն՝ զպատարագէն ասէ. շնորհել ասէ և ոչ՝ տալ. զի մի

1 Յաւելուն նոր ՕՕ.
«Եւ համբուրէ քահանայն զսե-
»ղանն. և այնուհետև զձեռն հա-
»ւասար նուիրանացն խոնարհե-
»ցուցանէ, և զաչսն 'ի նոյն ա-
»ռեալ, ասէ ամռունչ զաղօթսն:
»Եւ յայսմ հետէ երևելի նուի-
»րօքն աղերսէ զՀայրն. քանզի
»էջ Հոգին սուրբ 'ի վերայ նուի-
»րացն, և մեռեալ նիւթն կենդա-
»նարար (եղև), և անշունչն շնչա-
»ցաւ, օրինակն ճշմարտութեամբ
»եղև, նշանակն ստուգապէս մար-
»մին և արիւն Քրիստոսի կատա-
»րեցաւ. վասն որոյ այժմ իբրև
»զԱստուած հայեցողութեամբ
»հայցէ, ասելով»: Ըստ մտաց բա-
նից Ներ. Լամբրոնացւոյ են սոս-
ցուածքդ. տես 'ի պատարագա-
մեկնչի նորուն, էջ 397, և զծա-
նօթութիւնն նախանշանակեալ:

որպէս թէ հատուցումն ընդ բարւոյ իրիք հատուցանել ասիցեմք, այլ բարերարութեան պարգև ծրի։ Սէր հայցեմք լինել եկեղեցւոյ, այսինքն հաւատացեալ ժողովրդոց՝ առ Աստուած և առ միմեանս. և հաստատութիւն՝ 'ի հաւատս և 'ի բարի գործս, և խաղաղութիւն յարտաքին թշնամեաց, և անսասանելի մնալ յամբարշտաց և 'ի հերձուածողաց. և փափաքելի և ցանկալի խաղաղութիւն ամենայնիւ ունել, զոր և ըղձալի ասաց։ Յարէ 'ի նոյն՝ վասն ամենեցունց հայցել առանձնակ ըստ կարգի, այսպէս ասելով։

« Եւ ամենայն ուղղափառ եպիսկոպոսաց », թէ որք ուղիղ են հաւատով։ « Քահանայից, թագաւորաց, իշ-
« խանաց, ժողովրդոց, ճանապարհորդելոց և որք 'ի
» պատերազմունս. բարբարոսաց ». ամենեցուն՝ Քրիստոսի պատարագաւն ողորմութիւն հայցելով։ Վտանգաւորք են՝ որք յինչ և իցէ նեղութիւնս, և 'ի պատերազմունս բարբարոսաց են, որք ընդ այլազգիս և ընդ այլ անհաւատս մարտ եդեալ կռուին, պարսպել յանդորրութեան զեկեղեցի Քրիստոսի։

« Սովաւ և օդոց շնորհեա բարեխառնութիւն, և
» պտղոց առատութիւն, և ախտացելոց 'ի պէսպէս
» ցաւոց՝ փութապէս առողջութիւն »։ Բարեխառն օդք այն են՝ որ ոչ վնասեն բուսոց և տնկոց, այլ բարիոք սնուցանեն, և պտղաբերս առնեն։ Ախտացելոց 'ի պէսպէս ցաւս, ասէ զհիւանդացեալս յայլ և այլ գունակ ցաւոց, փութով առողջութիւն գտանել հայցելով, թէ մարմնով և թէ հոգւով, թէ մօք վտանգեալ ոք իցէ։

« Սովաւ հանգո զամենեսեան զյառաջագոյն 'ի
» Քրիստոս ննջեցեալսն ». թէ որ յԱդամայ հետէ հաւատով ննջեցեալք են 'ի Քրիստոս, վասն զի ոչ զկնի գալստեանն միայն՝ այլ և յառաջ քան զգալուստն Քրիստոսի հաւատացեալքն յԱստուած՝ 'ի Քրիստոս ննջեցին[1]. զի նա էր 'ի սկզբանէ առ Աստուած, և Աստուած էր. սուրբքն նախածանօթք իսկ

1 Գեղեցիկ և խորատես վարդապետութիւն. ընդ որում պարզաբանելի ևս էր, թէ զամենայն արդարացելոցն հոգիս՝ Քրիստոս վերածեաց ընդ իւր 'ի փառս երանականս։

նորա էին. որպէս և ասէ իսկ երանելին Գրիգոր աստուածաբան՝ վասն կատարելոցն. իսկ անկատարքն՝ Աստուած դաւանելով զոր ՚ի մարգարէիցն և յարդարոցն քարոզիւք, սուրբ Երրորդութեանն զերկրպագութիւնն մատուցանէին, թէ և առանձնաւորութեանցն անծանօթ հանդիպէին. վասն որոյ և նոքա իսկ ՚ի Քրիստոս մկրտեցեալք ասին: Յաղագս որոյ ասելով, թէ հանգո զմկրտեցեալսն ՚ի Քրիստոս, ոչ միայն զորս ՚ի նորումն թուէ՝ այլ ասէ զսուրբ հարսն՝ որք յԱդամայ մինչև յԱբրահամ, և որք ՚ի նմանէ:

« Զմարգարէս, զառաքեալս, զվկայեալս, զեպիսկո-
» պոսունս, զերիցունս, զսարկաւագունս, և զբնաւ
» ուխտ եկեղեցւոյ քում սրբոյ »: Այս է, կէս սարկաւագքն, դպիրքն, գրակարդացքն, սաղմոսողքն. բնաւ ասելն զովանդակն ցուցանէ՝ որ ՚ի կարգի եկեղեցւոյ, ուխտ ասելով եկեղեցւոյ. զի ամենեքին նուիրեալ են ՚ի սպասաւորութիւն և ՚ի կարգաւորութիւն եկեղեցւոյ սրբոյ:

« Եւ յաշխարհական կարգս զարս և զկանայս հաւա-
» տացեալս ՚ի քեզ »: Աստանօր զհամօրէն զաշխարհականաց հաւատացելոց՝ որք ՚ի հնումն և որք ՚ի նորումն հաւատով վախճանեցան՝ յիշատակէ. զի որպէս զսրբոցն զաղօթս և զբարեխօսութիւն մեզ կոչեմք յօգնականութիւն, նոյնպէս և մեք պարտիմք առաջնոց մկրտեցելոցն օգնել աղօթիւք, մանաւանդ սուրբ պատարագաւն, որ յոյս և կենդանութիւն և փրկութիւն է մկրտեցելոց: Զի զմեր մկրտեցեալսն և զսիրելիսն և զծանօթսն մեր՝ յանուանէ յիշել ունիմք, թէ բերանով և թէ մտօք. իսկ զայլսն՝ հայցեմք յիշել Աստուծոյ՝ որ զամենայն գիտէ, և կարգ ըստ կարգի յիշելով ըզսուրբսն, և ընդ նոսա զամենայն հաւատացեալս ՚ի միմեանս յարելով՝ իբրև զմի մարմին Քրիստոսի՝ հասարակաց գլխովն Քրիստոսի պատարագաւն, յիշատակելով առաջի Աստուծոյ Հօր, յայս զբանն աւարտեմք.

« Ընդ որս և մեզ այց արասցես, բարերար և մար-
» դասէր Տէր »: Թէ ընդ նոսա ամենեսին՝ զորս յիշատակեցաքն՝ և մեզ այցելութիւն արասցես. այսինքն թէ խնդիր արա, և խնամածու ընդ քոյսն և մեզ լիցիս: Զսոյն զայս զոր յիշատակէ քահանայն՝ սարկաւագն

դարձեալ յիշատակէ բարձր ձայնիւ, ուրոյն ուրոյն անուն զատուցեալ. և ըստ իւրաքանչիւր տան՝ ժողովուրդն որ 'ի խորհրդեանն՝ ասեն ձայնիւ. «Յիշեա Տէր » և ողորմեա»: Որ բուն քարոզն է բազում անուն ունի. նախ վասն Աստուածածնին, և ապա ուրոյն ուրոյն սրբոցն ըստ կարգի, նախահարցն, մարգարէիցն, առաքելոցն, եպիսկոպոսաց, մարտիրոսաց, քահանայից, սարկաւագաց, կանանց ընտրելոց, կանանց մարտիրոսաց, Թագաւորաց սրբոց, իշխանաց սրբոց, վարդապետաց սրբոց, հարց առաքինեաց և մարտիրոսաց, առաջնորդաց, և ամենայն Ճգնաւորաց, և որ այլ ինչ օրինակաւ հաճոյացեալ են Աստուծոյ. զի ըստ իւրաքանչիւրոցն է յանուանէ զոմանս յիշեալ յամենայն դունակէ, և զհամօրէն կարգակիցսն 'ի նոյն յարել. զորս 'ի տօնս զատկաց ասեն՝ որք բարեկարգութեան հոգտանին: Իսկ զոր համառօտիւք հարկ է ասել 'ի ժամ սուրբ պատարագին՝ է այս [1]:

1 Աստանօր նոր օրինակք ունին և զյետագայդ, որ յայտնապէս ճանաչի ոչ լինել Խոսրովայ. քանզի սա այլ ազգ մեկնէ 'ի բնագրին զյիշատակութիւն Սրբոցն. «Իսկ թէ ասիցէ ոք, թէ զիա՞րդ և
»զմարգարէն յիշատակէ աստ՝ ի-
»բրև զկարօտս, որոյ և մեք իսկ
»ակն ունիմք բարեխօսութեան
»նոցին, այսպէս իմասցիս. քանզի
»թէպէտ փառաւորեցան նոքա և
»հանգեան, սակայն ոչ բնաւ 'ի
»լրումն հասին. այլ օր ըստ օրէ
»քաղցնուն և զառաւելութիւն
»խնդրեն. վասն զի անմարմին փա-
»ռացն յորս նոքա հասին՝ չէ հնար
»թէ կատարումն լիցի, քանզի ի-
»մաստութիւն հոգևոր և գիտու-
»թիւն աստուածային: Արդ եթէ
»այսմ երկրաւոր գիտութեանս չէ
»հնար թէ լրումն լինիցի, ո՞րչափ
»ևս առաւել այնմ՝ որ իմանալին
»է և աստուածայինն. այլ հանա-
»պազ օր ըստ օրէ փառաց 'ի
»փառս վերանան. որպէս և հրեշ-
»տակք, զի յամենայն աւուր նոր
»գիտութիւն և իմաստք առնուն
»յԱստուծոյ, որպէս և սուրբքն.
»վասն այնորիկ նախ նոցա հայցէ
»Քրիստոսիւ զողորմութիւն, և
»ապա զայլսն յիշէ մի ըստ միոջէ:
»Բայց տես դու, ո՛վ իմաստուն այր
»և խոհեմ, 'ի կարգս և 'ի խոր-
»հուրդս աղօթիցդ զոր մատու-
»ցանես, թէ որպէս նախ զկեն-
»դանիս յիշատակես և ապա զնըն-
»ջեցեալսն. և այսու իմա հաւա-
»տիւ, թէ նախ կենդանեաց է
»փրկութիւն՝ աստուածային զե-
»նումնս այս, և ապա մեռելոց. և
»ունայն են բանք այնոցիկ, որք
»կարծեն տղայական մտօք, թէ
»ոչ է պարտ զկենդանիս ոք յիշա-
»տակել 'ի պատարագին: Մի՞թէ
»թագաւորք և իշխանք, եպիսկո-
»պոսք և քահանայք, ճանապար-
»հորդք և նաւորդք, հիւանդք,
»և այլն ամենայն, ո՞չ իցեն կենդա-
»նի: Արդ կամիս ուսանել զճըշ-
»մարտութիւն. պատարագս զոր
»մատուցանես՝ ոչ է հնար թէ
»միում միայն առնեն զնա որպէս
»և կարծեն, այլ և ամենայն աշ-
»խարհի, որպէս և բանք աղօթիցս
»յայտ առնէ: Բայց եթէ հաւա-
»տով ոք տացէ 'ի ձեռն քո ողոր-

« Աստուածածնին կուսին Մարիամու, Յովհաննու
» Մկրտչին, սրբոյն Ստեփաննոսի, յիշատակ եղիցի։
» Առաքելոց սրբոց, մարգարէից, մարտիրոսաց, Պետրո-
» սի Պօղոսի, և ամենայն սրբոցն, յիշատակ եղիցի։
» Հայրապետաց սրբոց, երանելւոյն սրբոյն Գրիգորի և
» ամենայն սուրբ և ուղղափառ եպիսկոպոսաց և քա-
» հանայից, և բոլոր ուխտի եկեղեցւոյ յիշատակ եղի-
» ցի։ Եղիցի յիշատակ արանց և կանանց հաւատով 'ի
» Քրիստոս ննջեցելոցն»։ Այլ թէ որպիսի մտօք յիշա-
տակքս այս են՝ ըստ իմում տկար հասողութեանս ջա-
նացայց ցուցանել։ Բազում և ազգի ազգի երախտեացն
Աստուծոյ, առաք յԱստուծոյ շնորհ՛ փոխադարձել
նմա զսուրբ պատարագին Քրիստոսի ընծայումն. ո-
րով և զամենայն զարարեալ բարերարութիւնսն Աս-
տուծոյ յիշելով՝ վասն ամենայնի գոհացողք լինիմք։
Եւ 'ի վերայ ամենայնի վասն ընտրելոցն 'ի նմանէ գո-

»մութիւն զինչ և իցէ, և յանձն
»առնէ քեզ՝ յիշատակել քեզ
»զինքն կամ զայլս, զկենդանի ոք
»կամ զմեռեալ 'ի պատարագ, նախ
»տես և քննեա զգործս նորա, թէ
»է՞ յայնպիսեաց զի արժանի իցէ յի-
»շատակել առաջի ահաւոր խոր-
»հրդոյն. մի՛ գուցէ անառակ ոք
»իցէ և պոռնիկ, շնացօղ և արբե-
»ցօղ, զրկօղ և անօրէն։ Արդ ե-
»թէ յայսպիսի ոմանց առցես ինչ
»և պատարագեսցես զՔրիստոս,
»կցորդ եղեր չարեաց նոցա, և
»վրիպեալ գտանիս ոչ միայն 'ի
»խնդրուածոցն՝ այլ 'ի քահանայա-
»կան կարգէդ։ Ապա եթէ այր եր-
»կիւղած և աստուածապաշտ իցէ
»և առցէ ողորմութիւն 'ի ձեռս
»քո հաւատով՝ յիշատակել զնա
»'ի պատարագն զոր մատուցա-
»նես. արդ թէպէտ և դու վասն
»ամենայն աշխարհի մատուցանես
»զպատարագն, սակայն նա որ ետ
»զողորմութիւն՝ առցէ ըստ յու-
»սոյն իւրոյ զփոխարէնն, ոչ միայն
»յայն պատարագէ զոր դու մա-
»տուցեր, այլ և յամենայնէ ընդ բո-
»լոր աշխարհս յամենայն եկեղե-
»ցիս ուղղափառաց (սուրբ) պատա-
»րագի Քրիստոս, յայս կեանս ըն-
»հարիւրապատիկն, և յաշխարհին
»որ գալոցն է զկեանս յաւիտե-
»նականս ժառանգեսցէ. զի մի է
»Տէրն և մի է խորհուրդ մարմնոյ
»և արեան նորա, որ ընդ ամե-
»նայն տիեզերս կատարի։ Նոյն-
»պէս և թէ վասն մեռելոց պա-
»տարագես, ընտրեա և տես, թէ
»բարի գործովք ելին յաշխարհէ,
»և կամ թէ մեղան և դարձեալ
»զղջացան, և խոստովանութեամբ
»և ապաշխարութեամբ հաճոյա-
»ցան, և ողորմութեամբ և ար-
»տասուօք արժանի եղեն. իսկ որք
»ոչ այնպէս, այլ յանզղջութիւն
»և յանզգուշութեան եգիտ զնո-
»սա, և ոչ յետին պահու զզղջման
»արժանի եղեն, զայնոսիկ ոչ է ար-
»ժան յիշել պատարագաւ։ Այլ
»և անձին քում առաւել պատ-
»րաստ լեր, յամենայնի սուրբ և
»մաքուր լինել յամենայն արա-
»տոյ մեղաց, և մանաւանդ յա-
»գահութենէ, 'ի փառասիրութե-
»նէ սնոտից. զի ահա և քրիստո-
»սավաճառ լինիցիս, որ չար է
»քան զՅուդայն»։

հանամք սուրբ խորհրդովս. վասն զի ամենեքեան մի եմք 'ի Քրիստոս, և փառաւորութիւն եղբարցն՝ մեզ է փառք. զմեծ նուէրն յիշատակ գոհութեան նոցա առնեմք, որ այսպիսի լոյս և պիտանիս զնոսա արար, և յաղթօղս առ ամենայն մարտս բանսարկուին: Եւ ոչ միայն վասն սրբոցն գոհանամք, այլ և վասն ամենայն յԱստուած հաւատացելոց արժանացելոցն. քանզի որպէս ասացն Սողոմոն, թէ ճանաչելն զԱստուած բովանդակ արդարութիւն է. և լինել նորա ժողովուրդ և սուրբ աւազանին ծնունդ, և սուրբ հաղորդութեանն ընդունօղ, և սուրբ անուամբն Քրիստոսի զհրաժարումն առնուլ՝ պարգև մեծ է: Եւ յայսոցիկ ամենեցուն և սոյնպիսեաց պարգևառուացն գոհութիւն՝ աւարտի սրբով պատարագաւն: Որով ոչ միայն գոհացողութիւն նուաւ Աստուծոյ մատուցանեմք ըստ իւրաքանչիւրոցն՝ այլ և մաղթանս, յիշելով զսրբոյն զնահատակութիւնս և զառաքինի վարս. գոհանամք սուրբ խորհրդովս, և աղաչեմք զՔրիստոսի մահն՝ որ վասն մեր, և զսրբոցն զճգնութիւնս բարեխօս առ Երկնաւոր Հայրն ունելով՝ յաղագս ամենայն հաւատացելոց, կենդանեաց և ննջեցելոց. քանզի որպէս մեք բերկրեալք ընդ սուրբսն՝ Աստուծոյ ընծայս և գոհութիւնս մատուցանեմք՝ մեզ զնոցայն համարեալ պսակումն[1], նոյնպէս և նոքա որպէս իւրեանց անդամոց խնամակալուք լինին բարեխօսութեամբ առ Տէր, մանաւանդ 'ի ժամ սոսկալի պատարագին: Եւ մեք գոհանալով նոքօք ըստ իւրաքանչիւր տանց ասեմք, Յիշեա Տէր և ողորմեա. այսինքն թէ յիշեա զոր սրբոցն առ քեզ սէր և վաստակ և ողորմեա մեզ, զի մեր նոքա, և 'ի մէնջ են. և միոյ եկեղեցւոյ ամենեքին մեք, և միոյ Քրիստոսի որ գլուխն է մեր՝ բոլորեքեան մարմին և անդամք եմք. վասն որոյ և յիշատակօք սրբոցն դարձեալ սկիզբն առնեմք մաղթել ողորմութիւն 'ի ձեռն սուրբ պատարագին, կարգ ըստ կարգէ. այսպէս ասելով.

« Յիշեա, Տէր, և ողորմեա, և օրհնեա զսուրբ Սիոն՝
» զկաթողիկէ առաքելական եկեղեցի քո, զոր փրկե-
» ցեր պատուական արեամբ միածնի քոյ և ազատե-

1 Յօրինական՝ պսակաւորումն:

» ցեր, և տուր սմա զանչափ զքո զխաղաղութիւնդ »: Սիոն մայր է 'ի մեր լեզուս. և թէ զԵրուսաղէմի եկեղեցւոյն է մաղթանքս վասն սուրբ տեղեացն Երուսաղէմի՝ պատշաճ է. զի նախ զնա դնելի է [1] և ապա զամենայն տիեզերական եկեղեցիս. և թէ զամենայն եկեղեցի՝ մայր Սիոն կոչէ, և այս չէ հեռի 'ի դիտաւորութենէն. զի սուրբ եկեղեցի ծնանի սուրբ աւազանաւն զմեզ, և սնուցանէ հոգևոր սննդեամբ զմեզ: Կաթողիկէն՝ տիեզերական է. հայցեմք ողորմութիւն ամենայն եկեղեցեաց՝ որ յամենայն տիեզերս ըստ քարոզութեան առաքելոցն շինեալ են, վասն որոյ և առաքելական կոչեմք. իսկ որք թիւրեալք են յառաքելոցն դաւանութենէ՝ նոքա ոչ ևս առաքելական կոչին: Իսկ առաքելական եկեղեցիք թէպէտ և ընդ բազում տեղիս են՝ սակայն մի ասի, վասն միաբանական հաւատոցն. վասն որոյ որպէս զմիոյ ասի եկեղեցիք ամենայն: « Զոր փրկեցեր պատուական արեամբ միածնի քոյ և » ազատեցեր ». քանզի սուրբ արեամբն Քնի փրկեցաք յանիծից և 'ի մեղաց և 'ի մահուանէ, և ազատեցաք 'ի ծառայութենէ սատանայի: Արդ ասէ, ոչ բազում անուանաբար եկեղեցիս այլ եկեղեցի, և ոչ զորս փրկեցեր, այլ զոր փրկեցեր. և ոչ ասէ տուր սոցա, այլ թէ տուր սմա զանշարժ քո զխաղաղութիւն:

« Յիշեա Տէր, և ողորմեա և օրհնեա զամենայն ուղ- » ղափառ եպիսկոպոսունս, որք ուղիղ գնացիւք հա- » մառօտեն զբանն ճշմարտութեան »: Զի՞նչ է համառօտելն. այսինքն է՝ ճիշդ զուղիղն և զստոյգ վարդապետութիւնն, յոր ոչ յարի ինչ թիւրութիւն կամ խոտորումն յաջ կամ յահեակ. վասն որոյ և յարէ 'ի նոյն՝ թէ զբանն ճշմարտութեան. զի ճշմարտութիւն մի է, ստութիւն 'ի բազում բաժանի: Վասն այսր համառօտ բանի Եսայի յառաջագոյն գուշակեաց և Պաւղոս մեկնէ, թէ Բան մի հակիրճ և համառօտ արդարութեամբ, զբանն հակիրճ արասցէ Տէր 'ի վերայ երկրի. զի ոչ իբրև զօրէնացն բազմապատկաբար է, այլ հաւատովք 'ի սուրբ Երրորդութիւնն և 'ի Քրիստոսի

1 Վասն պատուի անօրինական տեղեացն և նախ անդ հաստատելոյ եկեղեցւոյն:

անօրէնութիւնն՝ արդարանամք ։ Արդ խնդրեմք ողորմութեամբն Աստուծոյ՝ զուղղափառ զեպիսկոպոսունս զօրացուցանել յառաջնորդութեան վաստակսն . զՀասարակացն Հայցելով՝ առաւել պաղատիմք վասն որ մեզն առաջնորդէ, այսպէս ասելով . « Եւ ես առաւել » զվարդապետն մեր և զվերակացու, և զտեսուչ ոգւոց » մերոց, զայս անուն եպիսկոպոս . և շնորհեա մեզ, Տէր, » ըստ երկայն աւուրս » ։ Ե՞ր աղագաւ չշատացաւ եպիսկոպոս միայն ասել, այլ յաւել թէ զվարդապետս մեր և զվերակացու և զտեսուչ ոգւոց մերոց . զի ջերմեռանդն սրտիւ, և սերտ սիրով վասն նորա խնդրեսցուք . մեզ առաւելագոյն գիտելով քան եպիսկոպոսին՝ զՀայցուածսն . զի թէ փոյթ 'ի վարդապետութիւն լինիցի, և զվերակացութիւն քաջապէս կատարեսցէ, և զամենեցուն ոգիս տեսանիցէ թէ որպէս իցեն, և թէ այս անուն կամ այն անուն Հեղգ իցեն 'ի բարեգործութեան, կամ արատ ինչ և բիծ 'ի Հոգին ունիցին, և չՀեղգայցէ վասն նոցա աղօթիւք և խրատու, և ըզգուշանայցէ ամենայն արթնութեամբ, Հօտին առաւել քան անձին զշաՀն Համարել ։ Եւ մեր զայս գիտելով, ամենայն Հաւատութեամբ խնդրեսցուք վասն առաջնորդաց մերոց . զի ըստ այսմ և զայն ածցուք զմըտաւ . թէ պարտական եմք փոխարէն Հատուցանել նոցա աղօթելոյն վասն մեր՝ մերովք աղօթիւք վասն նոցա . զի և այնպէս առաւել որ վասն մեր խնդրուածք նոցա իցեն՝ լինի առ Աստուած, յորժամ մեք վասն նոցա աղաչիցեմք ։ Այսպիսեաւ Պաւղոս տայ խրատ Կորնթացւոցն . Բերանք մեր բացեալ առ ձեզ, ասելով, և սիրտք մեր ընդարձակեալ . ոչինչ նեղիք 'ի մէնջ . այս ինչ է, թէպէտ և բազում էք դուք, և այլք ևս Հօտք են մեզ, այլ չնեղին սիրտք մեր մտանել զօք և անտեսել 'ի խրատուէ և յաղօթից . բայց դուք, ասէ, 'ի գութս ձեր նեղիք . և ոչ այնչափ վասն իմ միոյ Հոգայք, որպէս ես վասն ձեր և ամենեցունց . և յարէ 'ի նոյն . Արդ զնոյն Հատուցումն իբրև ընդ որդեակս ունիմ, ընդարձակեցարուք և դուք . զի օգտեցուսցէ զնոսա Հատուցանօղն լինելով, ասէր զայս . ոչ զիւր օգուտն միայն խնդրելով, որպէս ասաց ինքն, այլ զբազմաց ։ Վասն այնորիկ և յամենայն 'ի թուղթսն աղօթս Հրա-

մայէ իւր առնել. զնոցայն առաւել օգուտ քան զիւրն
հոգալով՝ պէտս առնէր նոցա աղօթիցն Պաւղոս. այլ
կամէր զի ընդ իւր օգտելոյն 'ի նոցանէ՝ և նոքա օգ-
տեսցին. և վասն այնորիկ ոչ ասէր զաղօթիցն՝ թէ զի
ես շահեցայց, այլ թէ բանին լիցի առաւելութիւն՝ առ
'ի մարդկան փրկութիւն:

« Յիշեա, Տէր, և ողորմեա, և օրհնեա զմեզ և զառա-
» ջի կացեալ քո ժողովուրդս, և զպատարագիս մա-
» տուցօղս, և պարգևեա իւրաքանչիւրոցն զպիտոյսն և
» զօգտակարսն »: Մեզ ասաց՝ որք 'ի խորհրդեանն ի-
ցեմք առաջի կացեալք. և ժողովուրդ՝ բովանդակ ժո-
ղովրդեանս ասէ. պատարագին մատուցօղն, յայտ է որ
զխորհուրդն կատարէ: «Եւ պարգևեա իւրաքանչիւրոցն
» զպիտոյսն և զօգտակարսն ». մեք ասէ, բազում ան-
գամ լինի զի զանօգուտն խնդրեմք, այլ դու որ գի-
տես զմեր պէտսն և զօգուտն՝ շնորհեա հայրաբար և
արարչապէս իւրաքանչիւրոց, այսինքն ամենեցուն մեզ՝
ըստ օգտի:

« Յիշեա Տէր և ողորմեա, և օրհնեա զպտղաբերիչս
» եկեղեցւոյ քում սրբոյ, և զայնոսիկ որք յիշեն զաղ-
» քատս ողորմածութեամբ. և հատո զպարտս հայց-
» մանց նոցա ըստ ընդաբոյս առատութեանդ քո՝ հա-
» րիւրապատիկ, աստ և 'ի հանդերձելումդ »: Ոմանք
սպաս նուիրանաց ընծայեն եկեղեցւոյ, ոմանք գիրս
աստուածաշունչս, պտղաբերեն և 'ի կալոյ և 'ի հըն-
ձանէ և յանասնոց. այլ և 'ի տօնս փրկականս և 'ի յի-
շատակս սրբոցն ընծայաբերեն ըստ կարի. և մեք խըն-
դրեմք վասն նոցա, և վասն ողորմածացն՝ որք զաղքա-
տըս ընդունին յիւրեանց գոյիցն: Բայց ոչ վայրապար
յաւել զողորմածութեամբն, այլ զի ծանիցուք թէ
գթութեամբ և ողորմութեամբ և ցանկութեամբ
զաղքատն յիշելն՝ հաճոյ է Աստուծոյ, քան զտուրսն.
զոր և առաքեալ ասէ. Ողորմութիւնն 'ի կամաց է, և
առնելն՝ ըստ գոյին. իսկ ապա պարտապան ունին այն-
պիսիքն զԱստուած: Աղաչեմք հատուցանել ըստ ընդա-
բոյս առատութեանն իւրոյ. ընդաբոյս՝ է ինքնաբոյսն,
այսինքն՝ թէ բոյս բնութեանդ քո է ողորմու-
թիւն. հարիւրապատիկ աստ հատո, միոյն հարիւր, և որ
'ի հանդերձեալըն՝ անպատում պատրաստութիւնքն:

« Յիշեա Տէր և ողորմեա, և օրհնեա զհոգիս հան-
» գուցելոցն ». որպէս թէ ասիցեմք՝ յիշել յիւր ար-
քայութիւնն, որպէս զաւազակն, և ողորմութեամբ
օրհնել ընդ աջեայսն, որք զերանալիցն լսեն զձայն,
Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաս-
տեալ ձեզ զարքայութիւն։

« Յիշեա Տէր և զայնոսիկ որք յանձնեցին մեզ զխն-
» քեանս 'ի յաղօթել, և կառավարեա զկամս հայց-
» մանց նոցա և զմերոյն՝. ընդ ուղղորդն, և որ լինի է փր-
» կութեամբ »։ Զոր օրինակ կառավարն զկառաձիգսն
ուղղէ և չտայ թոյլ խոտորել 'ի պողոտայէն, այսպէս
և դու մերոց աղօթիցն լիցիս ուղղիչ, զի մի վրիպես-
ցեն 'ի կամաց քոց, կամ երկրաւոր ինչ խնդրել կամ
թշնամեացն չարի հատուցումն, կամ զմիտսն հանել
յաղօթիցն իմացուածոց, և այսր անդր յածեցուցա-
նել. այլ յերկինս զոգիսն ամբառնալ, և սուրբ մտօք
զպիտոյսն և զօգտակարսն 'ի նմանէ հայցել, և որ ընդ
զամենայն զմեր փրկութիւն։ « Եւ վարձատրեա բոլո-
» րեցունց ». թէ ամենեցուն տուր վարձս. — զո՞ր. — զա-
նանց և զերանելի բարութիւնսն. թէ որ ոչն անցանէ,
և երանելի եւ առնէ զընդունօղսն։ « Զանեալ զխոր-
» հուրդս մեր ». սրբեալ 'ի խղճէ և 'ի չար գործոց։
« Տաճարացս յընդունակութիւն մարմնոյ և արեան
» միածնիդ քոյ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիս-
» տոսի ». բնակարան ասէ և տուն քո միածնիդ պատ-
րաստեա զմեզ փրկական պատարագաւս։ « Ընդ ո-
» րում քեզ, Հօր ամենակալիդ ». այսինքն ընդ Որ-
դւոյ՝ քեզ Հօր ամենակալի, « համանգերձ կենդանարար
» և ազատիչ սուրբ Հոգւովդ՝ վայելեն փառք, իշխա-
» նութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս
» յաւիտենից. ամէն »։

## ՔԱՐՈԶ

« Քեզ Հօր ամենակալի՝ գոհութիւն և փառաբանու-
» թիւն մատուցանեմք, վասն սուրբ, անմահ, աստուա-
» ծային պատարագիս՝ որ 'ի վերայ սրբոյ սեղանոյս »։
Հայր է միածնին որդւոյն և ամենայնի տէր է. Աստուած
գոլով՝ ամենակալ է. գոհութիւն և բանս փառս տա-

լոյ՝ մատուցանեմք առն, վասն արժանի առնելոյ զմեզ այսպիսի պատարագ յահագին սեղանս դնել, ոչ յերկրէ յանասնոց, այլ յերկնուստ աստուածային. զի Աստուծոյ որդի է զենումն, անարատն, անմեղն, զոր սուրբ կոչէ. և թէպէտ մահու է նշանակ՝ այլ կենդանարար է, վասն որոյ և անմահ կոչէ։ Քանզի որպէս յաւանդելն Քրիստոս զոգին մարդկային՝ աստուածութեամբն կենդանի էր մարմինն, վասն զի Աստուծոյ մարմին էր, ընդ Աստուած միացեալ, և մի լեալ խառնմամբն, և 'ի կամելն յառնել՝ ինքն զինքն յարոյց. նոյն կենդանութիւն աստուածութեան և 'ի հացն և 'ի բաժակն միացեալ՝ անմահ է, և անմահութիւն մերձեցելոցն տայ։ Զոր օրինակ մարմինն 'ի մեռանելն՝ զբազում 'ի մեռելոց կենդանացոյց, այնպէս և 'ի լինել պատարագին տէրունական մահուն յիշատակ՝ զորբեալսն 'ի խղճէ կենդանի առնէ, որք նմայն հաղորդին. քանզի զայս գուշակելոյ վասն՝ յարեան որք մեռելութեամբն Քրիստոսի յարեան կենդանացեալք։ Եւ արդ տես զայն ժամու զխաչն՝ և հաւատա թէ այժմ նոյն լինի, զի չէ նուազ այս՝ քան զայն մարմինն. այլ նոյն է, և այն իսկ է։ Վասն որոյ և Տէրն խոստացաւ զսա ճաշակողացն՝ յաւիտենական առնուլ զկեանս. այլ որպէս անդ ոչ ոք յանսրբոցն կենդանացաւ, նոյնպէս և ոչ այժմ առանց սրբութեան ոք, կամ անապաշխարքն՝ կենդանութիւն գտանեն. այլ թէ լրքին երբէք՝ որպէս ըղՅուդայն՝ նմանութեամբ նորին դատապարտին։ Այլ յետ գոհանալոյ զայսպիսի մեծապարգևութեանց՝ խնդրուածս առնէ։ «Զսա մեզ 'ի փրկութիւն և 'ի » կենդանութիւն պարգևեա ». և զայն՝ որ 'ի սեղանս է՝ արասցես պատարագաւս։ «Սովաւ շնորհեա զսէր, » զհաստատութիւն և զըղձալի զխաղաղութիւն եկե» ղեցւոյ քում սրբոյ, և ամենայն ուղղափառ եպիս» կոպոսաց։ Եպիսկոպոսապետին մերոյ, և քահանա» յից՝ որ զպատարագս մատուցանէ »։ Արդ՝ թէպէտ և միանգամ հայցեաց քահանայն, սակայն կրկնէ սարկաւագն բարձր ձայնիւ, զի լսելի ամենեցուն լիցի, և ամենեքեան միաբան պաղատեսցին. և զի ուսանիցիմք՝ թէ որքան պիտանացուք են պարգևք սիրոյ որ առ Աստուած և առ միմեանս, և հաստատութեան և խա-

ղաղութեան, նոյնպէս և վասն առաջնորդաց խնդիրք։ Յաւելու ևս, թէ «Վասն որոյ, Տէր, զմատուցօղս ան-
»մոռաց զթութեամբդ քո յիշեա»։ Քանզի արարչական գութն Աստուծոյ զամենայն եղելովքս է, աղաչէ՝ մատուցողացն՝ զարարչական գութն չմոռանալ առ իւր, այլ յիշել և այցելել հանապազ։

«Յիշեա Տէր զհօգիս հանգուցելոցն 'ի քեզ յուսա-
»ցելոց»։ Վասն զի յաղագս հաւատով և յուսով ննջեցելոցն հրամայիմք խնդրել, վասն այնորիկ ասէ յիշել զհօգիս հանգուցելոց յուսացելոցն 'ի Նա։ «Քո
»Տէր, զօրութեամբ և անմահ պատարագաւս կեցո և
»ողորմեա մեզ». զի վասն մեր է, ասէ, պատարագս, արդ վասն սուրբ պատարագիս՝ կեցուցանօղ, ասէ, զօրութիւն քո ողորմեսցի մեզ։

## ԱՂՕԹՔ

«Աստուած ճշմարտութեան և հայր ողորմութեան»։ Աստուած՝ բնութեամբ ես, ասէ, վասն զի արարիչ ես, իսկ հայր՝ ողորմեցար և եղեր. յայն սակս և ճշմարտութեամբ ասէ զայն՝ որ սերտին է, և ողորմութեամբ զայն՝ որ խնամածութեամբն։ «Գոհանամք
»զքէն, որ 'ի վեր քան զերանելի նահապետացն զմեր
»պարտաւորելոցս առաւել մեծարեցեր զմնութիւն.
»քանզի նոցա Աստուած կոչեցար, իսկ մեզ հայր հա-
»ճեցար անուանիլ»։ Ասաց Աստուած, Ես եմ Աստուած Աբրահամու, Սահակայ, Յակովբայ, իսկ զհաւատացեալս՝ որդիս ասաց իւր լինել. վասն որոյ և Քրիստոս յաղօթելն՝ Հայր կոչել զԱստուած մեզ հրամայեաց. և առաքեալ ասէ, Այսուհետև չես ծառայ՝ այլ որդի։ Արդ գոհանայ զԱստուծոյ զանչափ մարդասիրութեանցն, զի քան զորբոցն՝ զմեր բնութիւնս զպարտաւորեալս 'ի մեղս՝ առաւելապէս մեծարոյ արարեր գթալով։ «Եւ այժմ զայսպիսի զառ 'ի քէն զնորոգ և
»զպատուական անուանադրութեան շնորհս՝ պայ-
»ծառացեալ օր ըստ օրէ ծաղկեցո յեկեղեցւոջ քում»։ Որովհետև, ասէ, այսպիսի սիրոյ արժանի արարեր զմնութիւնս մեր՝ մինչև որդիս կոչել և հայր մեր անուանիլ, մի երբէք մոռասցիս զգթալն իբրև հայր յոր

ղիս, թէ և մեղանչիցեմք, և մի արտաքսիցես զմեզ 'յայսպիսի մեծապարգև շնորհէ. այլ ջերմագութ գորովով՝ որպէս նորոգեցեր 'ի մեզ զպատուական անուանադրութեան շնորհս, որ ըստ օրէ պայծառացեալ և ծաղկեալ պահեա յեկեղեցւոջ քում, այսինքն 'ի հաւատացեալս 'ի քեզ:

«Եւ տուր մեզ համարձակաձայն բարբառով բանալ » զբերանս մեր, կարդալ առ քեզ՝ Հայր երկնաւոր, և » ասել»: Շնորհօք ողորմութե քո տացես մեզ համարձակել և ապաւինել 'ի քաղցրութիւն քո և 'ի գթութիւն և յանբաւ ներողութիւնդ, և կոչել զքեզ Հայր հողեղինացս և մեղաւորացս, զսուրբ և զերկնաւոր Հայրդ. և ոչ վայրապար յաւելու զայն՝ թէ բանալ զբերանս մեր. այլ քանզի փակէ զբերանս մեր համապաղորդ սխալանք բերանոց մերոց, վասն այնր աղաչեմք քաւութիւն առնել և սրբել զբերանս մեր, և տալ վստահութիւն բանալ զբերանս մեր և կոչել համարձակութեամբ հայր՝ զԱստուած:

Զհայր մեր որ յերկինսն՝ Նիւսացին սուրբն Գրիգոր և սուրբն Յովհան Ոսկեբերան յաճախական բանիւք մեկնեալ են, անտի ստուգագոյն ուսցին կամեցողք:

«Հայր մեր որ յերկինս ես»: Քանզի ըստ մարմնոյ ծննդեանս՝ երկրաւորս ունիմք հայրս[1], իսկ յաւազանէն սուրբ Հոգւոյն ծնեալ, և Քրիստոսի մարմնոյն և արեանն 'ի նա կցորդեալ՝ ունիմք մեզ հայր զերկնաւորն Հայր, զՔրիստոսի ծնօղն, յոր միացաքն մեք. վասն այսորիկ այսպէս ուսոյց Տէրն ասել. «Հայր մեր որ յեր» կինս, սուրբ եղիցի անուն քո»: Եթէ վասն մեր՝ սուրբ և փառաւոր լիցի անուն քո: «Եկեսցէ արքայու» թիւն քո». արքայութիւնն թագաւորութեան կոչումն է: Խնդրեմք տիրել մեզ Քրիստոսի թագաւորութեանն՝ նորուն շնորհօքն, զի մի թագաւորեալ մեղքն մեր՝ ծառայեցուսցեն զմեզ սատանայի. զանկամք և հանդերձեալ թագաւորութեան նորա գալ, որ խափանէ զսատանայի և զմեղաց իշխանութիւն:

«Եղիցին կամք քո, որպէս յերկինս և յերկրի». որպէս յերկինս չէ մոլորութիւն և մեղք, այլ ամենայն

1 Այսպէս յՕՕ:

ինչ ըստ կամաց քոց է, այսպէս և յերկրէ բարձցի ամբարշտութիւն, և հրեշտակացին մարդիկ, ամենեքին լինել կամարարք քո։

«Զհաց մեր հանապազորդ՝ տուր մեզ այսօր»․ զհարկաւոր պէտս մարմնոյ որ ըստ օրէ պարգևեա մեզ։ «Եւ » թող մեզ զպարտս մեր»․ զոր ինչ մեղաք և պարտապան պատժոց գտաք՝ թող մեզ․ «Որպէս և մեք » թողումք մերոց պարտապանաց»․ այնոցիկ՝ որ մեզն պարտեցին։ «Եւ մի տար զմեզ 'ի փորձութիւն»․ կամ 'ի սատանայէ փորձել կամ 'ի մարդկանէ, մեղօք կամ վտանգիւք իւիք։ «Այլ փրկեա զմեզ 'ի չարէն»․ յամենայն սատանայական որոգայթից։

«Տէր տերանց, Աստուած աստուծոց»․ ամենայն տերանց և աստուածոց Աստուած և տէր․ Աստուած ես հրեշտակաց և քահանայից։ «Հայր երկնաւոր, ա» ղաչեմք զքեզ, մի տար զմեզ 'ի փորձութիւն․ և մի » 'ի դատապարտութիւն, այլ փրկեա 'ի չարէ, ապրե» ցո 'ի փորձութենէ»։ Հայրաբար, ասէ, փրկօղ լեր 'ի փորձութենէ․ և անդատապարտ պահեա, և զերծո 'ի չարէ, քանզի կարօղ ես յամենայնի, և յաղթօղ է տէրութիւնդ քո ամենեցուն։ Եւ վասն այսր յաւել զայն․ «Քո է զօրութիւն և արքայութիւն․ և քեզ » վայելեն փառք իշխանութիւն և պատիւ․ այժմ և » միշտ և յաւիտեանս յաւիտենից»։[1]

1 Աստանօր յաւելումն նոր օրինակքն զկետադայդ․
Քահանայն խաղաղութիւն տայ։
Ժողովրդ․ Եւ ընդ հոգւոյդ քում։
Սարկ․ Աստուծոյ երկրպագեսցուք։
Ժողովրդ․ Առաջի քո։
Զ'առ Հայր աղօթելն վճարեաց․ այժմ կամի 'ի տեսութիւն ածել զաստուածային խորհուրդն․ վասն որոյ նախ զխաղաղութիւն տայ, և սարկաւագն հրամայէ երկիր պագանել, զի մի հարևանցի յանկարծադէմ տեսցեն զայս մեծ խորհուրդ․ դարձեալ, զի յորժամ տեսցեն՝ խոնարհելն երկիր պագանել, քահանայն խոնարհեցուցեալ զգլուխն նման ժողովրդեանն աղօթէ առ Հոգին սուրբ․ քանզի որպէս ասացաք՝ ամենայն շնորհաբաշխութիւն 'ի Հոգւոյն սրբոյ է․ և նախ Հոգին սուրբ աստուածացոյց զնշանակն․ վասն այնորիկ քահանայս այժմ առ Հոգին սուրբ աղօթէ վասն ժողովրդեանն։

# ԱՂՕԹՔ

« Որ աղբիւրդ ես կենաց և փրկութեան և բղխումն » ողորմութեան ». կեանք և ողորմութիւն 'ի քէն է աղբերաբար: « Ողորմեա ժողովրդեանս՝ որ խոնար- » հեալ երկիր պագանէ աստուածութեանդ քո » : Վայելեացէ յայդմանէ՝ 'ի մշտնջենաւոր աղբերէ՝ ժողովուրդս քո, որ երկիր պագանեն աստուածութեանդ քոյ. և 'ի խոնարհեալս առաջի քո: « Եւ պահպանեա զսոսա ամբողջս »: Ամբողջ է՝ զոր մեք համբողջն[1] ասեմք. բովանդակ, ասէ, ամենեքեան ամբողջ պահեսցին: « Տպաւորեա յոգւոջ սոցա զձև մարմնոյ ցուցակի ». զի որպէս մարմնոյ աչաց մերոց ցուցանի խորհուրդս մարմնաւորական, այսպէս և յոգիս մեր օրինակեսցի աստուածավայելուչ փառաց խորհրդոյս ահաւորութիւն. զի տիպն՝ օրինակ է: Արդ որպէս վասն Աստուծոյ ասէ առաքեալ, իբրև ընդ հայելի տեսանել զփառս Նորա, սոյնպէս և մեք աղաչեմք աներևոյթ փառաց պատարագին տեսօղ լինել:

« Առ 'ի ժառանգութիւն և 'ի վիճակ հանդերձե- » լոց բարեացն ». վիճակեցաք, ասէ առաքեալ, յառաջագոյն հրաւիրեալք. զայն աղաչեմք՝ զի մի խոտան գտցի ոք. այլ բոլորեքեան ժառանգք հանդերձելոց բարեացն լիցուք, և վիճակաւորք նմին: Յաւելու ևս. « Քրիստոսիւ Յիսուսիւ տերամբ մերով ». թէ շնորհօք Նորին օգնականութեամբ հանդերձելոց բարեացն արժանասցին, զոր Քրիստոսիւ Յիսուսիւ տերամբ մերով ընկալան զպրաւականն: « Ընդ որում քեզ Հոգւոյդ » սրբոյ և Հօր ամենակալի՝ վայելեն փառք, իշխանու- » թիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յա- » ւիտենից ». ամէն[2]:

1 Այլ Օ. համողջ:

2 Յաւելուն նոր ՕՕ.

Ս[illegible] [illegible] [illegible] ասէ. Պ[illegible]: Բարբառս այս յաւնական՝ 'ի մերս՝ ունկն դիք կամ 'ի վեր նայեցէք Թարգմանի:

Քահանայն [illegible] [illegible]ծայն 'ի վեր [illegible] [illegible] [illegible] ասէ. Ի սրբութիւն սրբոց: Ի սարկաւագին ձայնէն ընթացեալ ժողովուրդն, զոր ասաց թէ երկիւղիւ 'ի վեր հայեցարուք. և իբրև լուան և տեսին զոր ցանկային, ասէ. քահանային թէ սրբութիւն է սա, բայց

« Հայր սուրբ, որ կոչեցեր զմեզ յանուն միածնի » Որդւոյ քում՝ քրիստոնեայս » ։ Գլխաւորելով որ ինչ վասն մատուցման պատարագին գոհութիւն և աղօթք, և աւարտեալ զայն առանձնաբար օրհնութեամբք 'ի սուրբ Երրորդութիւնն, և դարձեալ զօրհնութիւն և զփառս միաւորութե̃ն, սկսանի գոհութիւն դարձեալ և մաղթանս, որ ոչ բնաւ մարդկութեանն՝ այլ որ հաւատացելոց միայն ։ Եւ քանզի ասաց մեծաձայնու-

սրբոցն և մաքրելոցն է սա 'ի սըրբութի̃, որք խոստովանութեամբն արտասուօք զինքեանս սրբեցին 'ի մեղաց ։

Դպիրքն մեծաձայն աղաղակեն. « Միայն սուրբ, միայն Տէր, Յիսուս Քրիստոս, 'ի փառս Աստուծոյ Հօր. ամէն » ։ Զպարտութիւն խոստովանելն յառաւել ուրախութենէն ասելով. Տէր մեր քահանայ, մեզ ուստի̃ լիցէ սրբու̃ն՝ կացելոցս ըստ մարմնոյ և ըստ արեան. այլ միայն սուրբ է սուրբք սրբոց, որ միայն Տէր է երկնի և երկրի. Տէր մեր Յիսուս Քրիստոս 'ի փառս Հօր փառաւորեալ ։

Քահանայն ունելով զնոյն յերկուսին 'ի ձեռն, և ասէ. Օրհնեալ Հայր սուրբ Աստուած ճշմարիտ ։

Դպիրքն ասէ. Ամէն ։ — Աւրհնեալ Որդին սուրբ Աստուած ճշմարիտ ։

Դպիրքն. Ամէն ։ — Աւրհնեալ Հոգին սուրբ Աստուած ճշմարիտ ։

Դպիրքն. Ամէն ։ — Աւրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ։

Եւ զի յԵրրորդութենէն ընկալաւ զայս մեծ շնորհս, զգոհացողական երգս նմա մատուցանէ. և դպիրքն զնոյն երկրորդեն քահանային ։

Քահանայն դարձեալ խոնարհի, աղօթէ և ասէ. « Նայեաց, Տէր մեր Յիսուս Քրիստոս, յերկնից 'ի սըրբութենէ քումմէ և յաթոռոյ փառաց թագաւորութեան քո » ։ Այս ցուցանէ զանբովանդակելի աստուածութիւն Որդւոյ ։ « Եկ 'ի սրբել և կեցուցանել զմեզ, որ ընդ Հօր նստիս և աստ պատարագիս » ։ Նա է սրբութիւն և կենդանութիւն ամենեցուն՝ Քրիստոս. զի թէպէտ և ընդ Հօր է անբաժանաբար, սակայն 'ի վերայ սեղանոյն պատարագի հանապազ ։ « Արժանի արա տալ մեզ յանարատ մարմնոյ քումմէ և 'ի պատուական յարենէ, և 'ի ձեռն մեր ամենայն ժողովրդեանն ։ « Զի մեք ըստ մեր գործոցս չունիմք համարձակութիւն մերձենալ 'ի քեզ, բայց դու արժանացուցես ողորմութեամբ, և 'ի ձեռն մեր ամենայն ժողովրդեանս ։

Եւ զայս ասացեալ՝ երկրպագէ զսեղանն. և առեալ զսուրբ մարմինն ողջ թանայ յանապական արիւնն, և բարձրացուցանէ յականերև ժողովրդեանն, և ասէ ։ Նախ 'ի սկըզբան պատարագիս յորժամ եմուտ առաջի սեղանոյն՝ երկրպագեաց. և դարձեալ յորժամ զՀոգին խընդրեաց իջանել և կատարել զպատարագն. և երրորդ անգամ երկրպագէ. զի յորժամ պատգամաւոր ոք առաջի թագաւորի մըտանէ, երկրպագէ նախ, և ապա զպատգամն ասէ, այսպիսի օրինակ էր քահանայիս առաջին երկրպագութիւն ։ Եւ որպէս ոք յորժամ շնորհ ինչ առնու 'ի թագաւորէն՝ երկրպագէ և գոհանայ, այսպէս և սա յորժամ զՀոգին ընկալաւ՝ երկրպագեաց և գոհացաւ ։ Նոյնպէս և այժմ յորժամ զայլ խնդրուածսն ընկալաւ՝ գոհանայ և երկրպագէ. և ասէ զաղօթս ։

թեամբ, թէ սրբութիւնք սրբոց վայելեն, և յայտնեաց թէ որպիսիք են սրբութիւնքն, յասելն՝ Հայր սուրբ, Որդի սուրբ, Հոգի սուրբ, և սուրբ պատարագն քրիստոսեան՝ վայելէ սուրբ Երրորդութեանդ ընծայ. և թէ որք հաղորդին սրբութեանցն՝ և նոքա մաքուր և սուրբ պարտին լինել. և զի մարդկային բնութիւնս միշտ աղտեղանայ 'ի սխալանաց, և ոչ կարէ ամենևին անախտ լինել, կոչէ տկարութեանս մերոյ օգնական զգթութիւնն Աստուծոյ. որով մաքրութիւն ստացեալ՝ 'ի մաքուրն մերձեսցուք։ Եւ նախ առաջին Հայրն ասելով՝ շարժէ 'ի գթութիւն զմարդասիրութիւնն Աստուծոյ, ապա այնու՝ զոր 'ի Հայրն յարէ. «Որ կոչեցեր զմեզ յանուն միածնի Որդւոյ քո քրիստոնեայս»։ Զի այսպիսի ասէ շնորհ ետուր մեզ, զքո միածնի Որդւոյդ առնուլ զանուն[1]. քանզի դա կոչի Քրիստոս, իսկ մեք քրիստոնեայք, այսինքն քրիստոսեանք. այսու և գոհանամք և 'ի գորով ածեմք. զի թէ մինչ օտարքն էաք՝ այսպէս սէրդ քո ստիպեաց գթալ, մինչև միածնիդ քո առնել բաժին և ժառանգութիւն, և դովիմք անուանիլ, ապա ո՞րչափ քրիստոնեայքս գոլով՝ աղեկէզ լինիցիս 'ի մեզ, վասն քո միոյ միածնիդ և սիրելի Որդւոյդ քո՝ մեր լեալ, և կոչեցեալ մեր՝ յանուն դորա։

« Եւ շնորհեցեր մեզ մկրտութիւն հոգևոր աւազանն 'ի թողութիւն մեղաց»։ Ոչ, ասէ, բաժին միայն և ժառանգութիւն ետուր զմեզ միածնի Որդւոյդ քո, ըստ խոստանալոյ մարգարէին՝ թէ տաց քեզ զհեթանոսս 'ի ժառանգութիւն, այլ և եղբարս ես կամեցար առնել զմեզ սիրելի և համագոյ Որդւոյդ քո. զի եղիցի դա անդրանիկ 'ի մէջ եղբարց բազմաց. յաղագս այնորիկ զաղտեղութիւն մեղաց մերոց լուացեր մկրտութեամբ աւազանին. և վերստին ծննդեամբ Հոգւոյն սրբոյ զմեզ որդիս վերածեր։ Այսու ես ասէ ջեռուցանել զհայրական սիրոյ բորբոքումն. զի եղոդ 'ի քէն սուրբ Հոգիդ՝ որ երկնեացն զմեզ՝ և քեզ որդեգիրս վերածեաց, արժանաւորս արասցէ զմեզ հաղորդիլ մարմնոյ և արեան միածնիդ քոյ։ Եւ քանզի

1 Ա. Օ. քո միածնաւ որդւովդ առնուլ զանուն։

առաւել յոյժ սաստկացաւ սէր քո 'ի մեզ՝ ոչ ժուժե֊
ցեր՝ այլ Որդի ունել զբնութեամբ[1] քո զՈրդիդ՝ և
այլ զմեզ՝ որ շնորհօք որդիացաքս. այլ յաղթեալ 'ի
մարդասիրութենէդ՝ խառնել զնա ընդ մեզ կամեցար.
որպէս զի նա գլուխ մեր լինիցի և մեք մարմին և ան֊
դամք նորա, և մի լիցուք մարմնով և արեամբ Քրիս֊
տոսի՝ 'ի նա յօդեալ և պատշաճեալ։ Որպէս զի բա֊
զումքս մի մարմին եմք 'ի Քրիստոս, ասաց առաքեալ.
և ըստ այսմ՝ մի որդի ամենեքեան։ Արդ այսպիսի ան֊
պատմելի սիրոյ յիշատակ առնելով՝ ապա զաղաչանս
առաջի արկանէ, չընկենուլ 'ի պատուոյն և 'ի շնոր֊
հացն՝ վասն սխալանաց մեղանաց մերոց. այլ որպէս
ասէ, յայնչափ յառաջին վատթարութեանցն՝ յայս֊
պիսի ածեր 'ի լաւութիւն, մաքուրս և այժմ արաս֊
ցես, և այնպէս 'ի մարմին և յարիւն Քրիստոսի մեր֊
ձեցուսցես։ Ապա ասէ. «Արա և այժմ արժանի ընդ֊
» ունել զհաղորդութիւնս զայս 'ի մեղաց թողութիւն»։
Եւ հաղորդութիւն կոչէ՝ զի կցորդի նա մեզ և մեք
նմա։ Յաղագս որոյ և զայսպիսի շնորհէ՝ գոհանալ ար֊
ժանապէս պարտ է. այսպէս ասէ. «Եւ յամենայնի ան֊
» դադար փառաւորել զՀայր և զՈրդի և զսուրբ Հո֊
» գիդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից»։

« Ի սուրբ[2] պատուական մարմնոյ և յարենէ Տեառն
» մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի՝ որ բաշխի 'ի միջի
» մերում. սա է կեանք, յոյս յարութեան, և քաւու֊
» թիւն և թողութիւն մեղաց մերոց »։ Ի ժողովուրդն
դարձուցանէ զբանն՝ զգուշացուցանելով, թէ առ ո
մերձին և ընդ ում հաղորդին. 'ի սուրբն սրբոց, 'ի պա֊
տուականն քան զերկինս և քան զերկիր, և քան զա֊
մենայն արարածս. յարարիչն ամենեցուն, յամենայն
պատուական գոյից հաստիչն։ Նորա է ասէ մարմինս
այս և արիւնս՝ առ որ մեքս հպիմք. որ Տէրն մեր է և
փրկիչն Յիսուս Քրիստոս. որ փրկեաց զմեզ 'ի սատա֊
նայէ, և ազատեաց 'ի ծառայութենէ մեղաց մերոց,
և տիրեաց մեզ։ Սա 'ի խաչէն վասն մեր՝ անփշրելի
ոսկերօք 'ի խաչին մնաց. իսկ այժմ բաժանի և բաշխի

1 Ա Օ. զբնութեան։
2 Նոր ՕՕ. միայն կրկնեն Ի սուրբ 'ի սուրբ։

'ի մեզ՝ վասն յամենեսեան խառնման։ Սա է կեանք. վասն զի ասաց Տէրն մեր, Որ ուտէ զհացս զայս՝ կեցցէ յաւիտեան։ Եւ լոյս է յարութեան. քանզի և զայս ասաց Տէրն մեր, թէ Ցարուցից զնա յաւուրն յետնում, որ ուտէ 'ի սմանէ. ոչ թէ որ ոչ ուտեն 'ի հացէս յայսմանէ՝ ոչ յառնեն, այլ զի ոչ վասն կելոյ՝ այլ վասն դատելոյ յառնեն, վասն այնորիկ չէ պարգև այն յարութիւնն՝ այլ պատիժք. քանզի ասաց Տէրն. Որոց բարիս գործեալ իցէ՝ յարութիւն կենաց, և որոց ըզչար արարեալ իցէ՝ յարութիւն դատաստանաց։ Ցաղագս որոյ զվայելողսն յիւր մարմնոյն՝ ասէ, սերտիւ յարուցեալ. և զայս լոյս զգեցուցանէ քահանայսն ժողովրդեանն յասելն, Սա է կեանք, լոյս յարութեան։ Այլ և Քաւութիւն, ասէ, և Թողութիւն մեղաց մերոց. զի յետ աւազանին՝ զախտսն խոստովանութեամբ և ապաշխարութեամբ 'ի սա մերձումն սրբէ. զի աւազանին մաքրութիւն՝ լուացման տարազաւ մաքրէ, և խորհրդոյս հաղորդութիւն՝ հալոցաց օրինակաւ։ Քանզի յաւազանն՝ 'ի լուանալի անկանիմք նիւթ, որ անտի փոխարկիմք 'ի բնութիւն ոսկւոյ և արծաթոյ, որում ոչ լուացման պէտք է այնուհետև առ 'ի զաղտն սրբել, այլ հալոցաց կարօտանայ։ Վասն այնորիկ 'ի հուրն յայն յահագին մտանելն՝ առնէ զմաքրումն։ Եւ զոր օրինակ անդ 'ի զտումն ոսկւոյն և արծաթոյն՝ պիտոյանան և այլ ինչ նիւթք, և ապա սրբի 'ի նոցունց աղտն հրովն, նոյնպէս և աստ խոստովանութիւն և ապաշխարութիւն է այնմ մաքրութեան գործակից. և որպէս անդ յատուկ հուրն այրէ և եթ, այլ ոչ եթէ հալէ և զատուցանէ զոսկին և զարծաթն յաղտոյ, այնպէս և աստ իմա ստուգապէս այրումն և ոչ սրբութիւն, առանց խոստովանութեան և ապաշխարութեան 'ի հոգևոր հուրն մերձումն. իսկ ապաշխարութեամբ մերձիլն՝ սրբութիւն հոգւոյն։ Զայսպիսի զբազմօգտութիւն պարգևի լուեալ ժողովրդոցն 'ի քահանայէն՝ վկայ լինին ամենեցն, զամէնն ասելով։

« Սաղմոս ասացէք Աստուծոյ մերում, սաղմոս ասա-
» ցէք բարերար և երկնաւոր թագաւորին, որ նստի 'ի
» վերայ քերոբէից. սաղմոս ասացէք, և զփառս տուք
» Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յա-

» ւիտեանս յաւիտենից » ։ Զի թէպէտ և 'ի սեղանս
տեսանի, այլ յերկինս է և 'ի քրովբէսն, Աստուած և
Թագաւոր ամենեցունց, վասն որոյ սաղմոս ասացէք և
փառս տուք նմա, և ընդ նմա՝ Հօր և Հոգւոյն սրբոյ. զի
Աստուածն և Թագաւորն՝ 'ի քերովբէսն նստեալն՝ զնոյն
'ի սեղանս դնէ մեզ կերակուր և ըմպելի ։ Եւ եղիցի
փառաւորեալ սուրբ Երրորդութիւնն. այժմ և միշտ
և յաւիտեանս յաւիտենից ։

Դարձեալ այլ ևս յաւելադրէ սարկաւագն զնոյն, թէ
« Սաղմոս ասացէք Տեառն Աստուծոյ մերոյ, դպիրք,
» ձայնիւ քաղցրութեամբ. զի նմա վայելեն սաղմոսք
» և երգք հոգևորք ». վայել է այսպէս զմեզ սիրողին՝
սաղմոս ասել 'ի ձայն քաղցրութեան. քաղցր է Աս֊
տուծոյ՝ որ 'ի սուրբ սրտէ սերտ սիրով օրհնութիւն է ։
« Եւ ևս որք հաւատով ընկալաք 'ի սուրբ և յանմահ
» և յանապական և յաստուածային խորհրդոյս՝ ըզ֊
» Տեառնէ գոհացարուք » ։ Վասն զի այսպէս 'ի Տեառ֊
նէ վարդապետեցաք. գոհացաւ նախ քան զաւանդելն
զխորհուրդն, զի այնպէս և մեք արասցուք ։ Արդ քա֊
րոզէ սարկաւագն և գոհանալ հրամայէ. Եւ ևս որք
հաւատով ընկալաք, և այլն. ասէ, գոհացարուք հա֊
ւատով ընկալեալ՝ որպէս զմարմին և զարիւն Աստուծոյ.
քանզի զայս յայտնէ յասելն, « Ի սուրբ յանմահ յա֊
» նապական, յաստուածային խորհրդոյս ». զի ամե֊
նեքին սուրբ և առանց մահու և ապականութեան Աս֊
տուած է. վասն որոյ ասէ առաքեալ. Որ միայն ունի
զանմահութիւն. իսկ այլքն զանմահութիւն և զանա֊
պականութիւն ոչ 'ի բնութենէ ունին, այլ 'ի նմանէ
առանան ։ Գոհացարուք՝ զի սրբոյն սրբիք, և անմա֊
հին անմահանայք, և յԱստուած մերձեցեալ աս֊
տուածանայք ։

Ապա ասեն միաբան ժողովուրդն. Գոհանամք ըզ֊
քէն, Տէր ։

« Գոհանամք զքէն, Քրիստոս փրկիչ մեր, որ զայս֊
» պիսի ճաշակումն բարութեան շնորհեցեր մեզ 'ի
» փրկութիւն կենդանութեան » ։ Նախ առաջին զայն֊
մանէ գոհանայ՝ զի փրկեացն զմեզ, և ապա՝ զի զայս֊
պիսի ճաշակումն ետ, յորմէ փրկութիւն և կենդա֊
նութիւն պարգևի. քանզի ամենայն խարդախութիւնք

դիւացն խափանիլն, տեսանելով 'ի մեզ զփրկական խորհրդոյն հաղորդութիւն. քանզի որպէս ասէ երանելի վարդապետն Յոհան, հուր ահագին տեսանէ 'ի բերանոց մերոց արձակեալ բանսարկուն՝ յորժամ 'ի խորհրդեանն վայելեալ իցեմք, և վասն այնորիկ ոչ մօտ գալ 'ի խարդախել զօրէ, այլ բացուստ 'ի բաց փախչի, և մեք փրկեալք լինիմք. փրկիմք նովաւ և 'ի հանդերձեալ բարկութենէն: Կենդանանամք աստ արդարութեան, վասն զի զօրութիւն առնումք յամենայն արդարագործութիւնս. զի որպէս մեռեալք են ամայիքն արդարութեան՝ 'ի շնորհացն Աստուծոյ, և կենդանիք գոն միայն մեղացն, և ամենայն անդամօք զանօրէնութիւն գործեն. սոյնպէս և որ արժանապէս ճաշակօղքն են սուրբ խորհրդոյն, շնորհօքն Աստուծոյ են լցեալք, մեռանին ամենայն անդամօք մեղացն, և արդարութեանն կենդանանան ամենեքումբքն: Քանզի աչքն յամենայն ժամ առ Տէրն լինին ըստ գրեցելոյն, և զԱստուած և զաստուածոյսն նկատեն. և ականջօքն ունկնդիր լինին աստուածական խրատուցն. բերանն խօսի զիմաստութիւն հոգևոր, և լեզուն զիրաւունս, և օրէնքն Աստուծոյ 'ի սիրտն հաստատեալ՝ անգայթակղ զգնացսն հաստատուն պահէ, և զձեռսն առաւելացուցանէ 'ի գործ Տեառն յամենայն ժամ, և առ Աստուած համբառնալ յորդորէ, և յաղաչանս պահէ: Այսպիսի կենդանութիւն աշխարհի՝ սրբով հաղորդութեամբն պարգևի, և 'ի հանդերձեալսն անզրաւ և մշտնջենաւոր կենդանութիւն, որ Քրիստոսի[1] և ընդ Քրիստոսի է:

Եւ զայսմանէ գոհացեալ՝ աղաչանաց սկիզբն առնէ. « Սովիմք պահեա զմեզ սրբապէսս[2] և անարատս ». մի՛ ասէ, տացես տեղի զտանել 'ի մեզ չարին, և աղտեղել կամ արատել զմեզ. այլ ընդ մեզ լինելով՝ սուրբս և անարատս պահեա. վասն որոյ և յարէ 'ի նոյն. «Եւ
» բանակեալ շուրջ զմեօք քոյով աստուածային խնա-
» մօքդ, հովուեա զմեզ յանդաստանի կամաց քոց
» սրբոց և բարեսիրաց ». հովիւ խնամակալ այսպիսի գոլով, որ 'ի քոց անդամոց զոչխարքս կերակրես, նոյն

1 Նոր ՕՕ. Քրիստոսի:

2 Ա. Օ. սուրբս:

խնամօք զմեօք շուրջ լեցիս, և 'ի գայլոյն պահեցես,
և 'ի մահացու արօտէ հեռի արածեցես։ Եւ ո՞ւր լի֊
նիցի այն. յաջորդն յայտ առնէ։ «Հովուեա զմեզ
» յանդաստանի կամաց քոց սրբոց և բարեսիրաց».
քանզի կամք Քրիստոսի արդարութիւն և բարեգոր֊
ծութիւն է, զայն ասէ ճարակել արժանի արասցես.
այն է վայրն դալարւոյ զոր սաղմոսերգուն նուագէ.
այն է անդաստան՝ որ ըստ Քրիստոսի կամացն է,
անմտանելի գայլուն, քաղաք որմեալ պատուիրանին
ամրութեամբ, որպէս և ասէն. «Որով ամրացեալք
յամենայն բանսարկուին ընդդիմութեանց». ընդդի֊
մութիւն բանսարկուին այն է՝ բարւոյն զչարն ընդ֊
դէմ դնել. խոնարհութեան՝ զհպարտութիւն, հեզու֊
թեան՝ զբարկութիւն, սիրոյն՝ զատելութիւն, պար֊
կեշտութեան՝ զագահութիւն, զգաստութեան՝ ըզ֊
պոռնկութիւն. նոյնպէս և այլոցն ուղղութեանց զհա֊
կառակ չարն ընդդիմադրել։ Ցայնցանէ ասէ ամրա֊
ցեալք՝ «Քումդ ևեթ արժանի եղիցուք լսել ձայնի. և
» քեզ միայն քաջայաղթ և ճշմարիտ հովուիդ հետե֊
» ւել»։ Զայն մաղթէ զլսելութիւն, զոր Տէրն ասէ,
Ոչխարք իմ ձայնի իմում լսեն, և ես ճանաչեմ զնոսա,
և զկնի իմ գան, և ես տամ նոցա զկեանս յաւիտենա֊
կանս. զայն աղօթիցն բան հայցէ, լսել ասէ զվարդա֊
պետութեան նորա զձայնն, և զկնի նորա երթալ։ Եւ
այս է զկնի երթալն. ուրանալ զանձն, և 'ի խաչ հպա֊
տակ միշտ կալ, և զայն ճանապարհ երթալ՝ զոր Տէրն
եցոյց, և ընդ անձուկն[1] մտանել և ընդ նեղն 'ի կեանսն,
և անդ առնուլ զայն՝ որ հայցէ բանիւն որ զհետ գայ։
«Եւ առ 'ի քէն ընդունել զպատրաստեալ տեղի յար֊
» քայութեան քում»։ Ըստ իւրաքանչիւր արժանաւո֊
րութեան պատրաստեալ լինին տեղիքն յարքայու֊
թեանն Քրիստոսի, յորժամ լուծանէ զթագաւորու֊
թիւնս, և միայն թագաւորութիւն նորա կայ և մնայ
յաւիտեան։ Զայն օթևանս խնդրէ աղօթիցս բան, և
յաւելու 'ի նոյն զպատճառս բարեգործութեան։ «Աս֊
» տուած մեր և Տէր մեր Յիսուս Քրիստոս». զի արա֊
րիչ ես, ասէ; և Տէր, որ և ազատեցեր զմեզ 'ի մեղաց,

1 Այլ ՕՕ. ընդարձակն։

և ընդ քով տէրութեամբդ արժանացուցեր լինել քոյով չարչարանօքդ, որով զանապականութիւն ընկալաք. և ոչ ըստ արարչութեանդ միայն տիրես մեզ, որպէս այլոց արարածոց, այլ զի և գնոց գնեցեր, զպատուական քո զարիւնդ փրկանս տուեալ: Վասն որոյ 'ի փառս տալն հանգուցանէ զբանն ասելով. «Որում վայելէն «փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և «յաւիտեանս»:

«Խաղաղութիւն ընդ ամենեսեան: Անքննին, ան-
» հաս, երրեակ ինքնութեանդ, հաստիչ, ընդունօղ և
» անբաժանելի միասնական սուրբ Երրորդութեանդ»: Անքննին ասի՝ վասն զի չանկանի և ոչ միով իւիք ընդ քննութեամբ. անհաս՝ վասն զի թէպէտ և յանդգնի ոք հասու լինել՝ ոչ կարէ գիտակ լինել Աստուծոյ էութեանն կամ մշտնջենաւորութեանն. երրեակ է՝ ըստ առանձնաւորութեան. զի Հայր է, և Որդի, և Հոգի սուրբ, որոշեալ դիմօք և միաւորեալ աստուածութեամբ. ինքնութիւն է՝ զի ոչ յումեքէ ունի զգոյութիւնն, այլ ինքնութեամբ է, որպէս սուրբ Լուսաւորիչն ասէ. Տէր Աստուած՝ որ Նա միայն ինքնութեամբ, և ոչ ոք յառաջ քան զնա: Հաստիչ է՝ զի հաստատեաց զարարածս՝ յանգոյից գոյացուցեալ, և հաստատուն պահէ յիւրաքանչիւր կարգի: Ընդունօղ է՝ վասն զի ընդունի և խնամէ զամենայն յինքենէ եղեալս[1], և պատրաստէ զիւրաքանչիւրոցն պէտս, ոչ միայն հրեշտակաց և մարդկան՝ այլ և ամենայն կենդանեաց. և բնաւ իսկ տայ գոյից զանձնիւր զարդ և զկացումն: Զերկինս անխոնարհելի պահէ և պայծառ՝ լուսաւորացն շրջագնացութեամբ. զերկիր՝ ունի անսասանելի, և վայելչացուցանէ զանազան բուսովք և տնկովք և սերմամբք, զոր և առոգէ անձրևածին ամպօք մինչև ցյագումն. այլ և զծով փակէ յիւրն սահմանի, զի մի յատակացն սուզանիցի, կամ եզերօքն սփռումն առնուցու՝ աւելի քան զչափն: Անբաժանելի է սուրբ Երրորդութիւնն, վասն զի թէ և առանձնաւորութեամբ բաժանեալ է սուրբ Երրորդութիւնն՝ այլ ըստ աստուածութեանն անբաժանելի է. մի է բնութիւն սուրբ Երրորդու-

1 Հին Օ. եղէալս:

թեանն, մի է էութիւն, մի տէրութիւն, մի կամք, մի փառաւորութիւն: Եւ նմա միայնոյ վայելէ երկրպագութիւն յամենայն գոյից. որպէս ասէ յետ այսորիկ. « Որում վայելեն փառք, իշխանութիւն և պատիւ. » այժմ և միշտ և յաւիտեանս »:

## ՅՈՐԴՈՐԱԿ[1]

Շնորհիւն Աստուծոյ յայտնաբանութիւն արարեալ եկեղեցական կարգադրութեանց՝ ըստ իւրաքանչիւր ժամուց՝ 'ի կատարումն հասուցաք. ոչ որչափ [illegible]էր խորհրդածութիւն քարոզացն և աղօթիցն բա[illegible] այլ որչափ հասողութիւն մեր բաւեաց՝ համառօտեցաք: Եւ թէպէտ և բազում են եկեղեցականացն կարգաց զանազանութիւնք, քարոզաց և աղօթից և պատարագամատուցաց, և են որք ըստ մարտիրոսաց յիշատակի, և են որք ըստ տէրունական տօնից, ծննդեանն և յարութեանն, և է որ շնորհատրութիւն կարգեալք. այսինքն՝ 'ի մկրտութիւն, 'ի ձեռնադրութիւն և յօրհնութիւն պսակի, և 'ի թաղումն մեռելոց, և 'ի սեղան հաստատել, և սպաս եկեղեցւոյ օրհնել, և զջուր սրբել 'ի յայտնութեան Տեառն, և խաչ օրհնել, և 'ի յօրհնել զսերմն, զկալ, զգուարակ, զաղ, զհատ, և որ այլ ևս են շնորհաբաշխութիւնք, և որ վասն Ճանապարհորդաց և հիւանդաց, և վասն այլ ինչ սոյնպիսեաց, զորս բովանդակ բան առ բան ընդ քննութե՟ արկանել, ոչ միայն մեք գրելոյն չկրնէաք հանդուրժօղ, այլ և ոչ ընթերցօղքն՝ լսելութեան: Բայց եթէ հաստատութեամբ ոք միտ դնէ այսոցիկ՝ որ ասացանս, բաւականապէս առ այլսն ամենեսին միտս ստանայ: Եւ զի՞նչ ասեմք թէ ամենեքումբք գրիցելովքս առ բովանդակ թողեալսն կարողանայ իմաստից, այլ թէ և մասին ինչ 'ի սոցանէ հասանէ մտաց՝ բաւականանայ առ ամենայն լրումն եկեղեցական կարգաւորութեանց:

Վասն որոյ աղաչեմ՝ մի՛ վարկպարազի գործ համարել զմտածութիւն աստուածեղէն բանից, մանաւանդ

1 Չիք 'ի բնագրին խորագիր, որպէս և ոչ զկնի՝ Յիշատակարան:

զքարոզութեանց և զաղօթից, զորմէ մեր փրկութիւն կախեալ կայ. և ոչ միայն մերն՝ այլ և որոց մեք պարտապան լիցուք, եթէ կենդանեաց և եթէ մեռելոց։ Զի ոչ եթէ լեզու որ ընդ օդն բախին՝ առանց մտացն զհետ երթալոյ՝ օգուտ ինչ գործէ. զի սրտագէտն Աստուած 'ի սիրտն և 'ի միտսն և ոչ 'ի բերանն հայի։ Վասն որոյ արթուն մտօք և անզբաղ խորհրդով և կատարեալիմաստ հոգւով՝ զաղօթսն հատուսցուք Աստուծոյ, զի զմեզ և զայլս օգտեցուսցուք. և մեք յայլոցն աղօթից՝ շահեալ լիցուք։ Քանզի թէ սրտի 'մտօք վասն ամենայն հաւատացելոց աղօթս արասցուք՝ 'ի բոլոր աղօթից հաւատացելոց օգուտ մեզ արասցուք. քանզի որով չափով չափեմք՝ չափեալ մեզ լինի։ Յաղագս որոյ նախ անձինն՝ ապա այլոց ամենեցունց տամ զգուշութիւն, հոգ անձին ունել, և յԱստուծոյ օգնութիւն հայցել, զի կարասցուք ըստ հաճոյիցն Աստուծոյ մատուցանել նմա զաղօթս մեր։

Եւս առաւել զգուշալի է առաջնորդաց եկեղեցւոյ, որք փոխանակ բովանդակ եկեղեցւոյ՝ զձեռս առ Աստուած ամբառնան, և զամենեցուն հայցուածս՝ Աստուծոյ պատգամաւորեն։

Որոց հարկ է՝ զի այնպիսի վարս ստանայցեն, որ համարձակութիւն տացեն նոցա առ աստուածխօսութիւն. զի որպէս Մովսէսն՝ յԱստուծոյ տեսութիւնն՝ ոգւովքն արժանացին, և որպէս երեւամբք՝ օգնական իւրեանց աղօթիցն զնախագնաց զսուրբսն ունիցին, և նոքօք զժողովրդոցն պատգամս՝ Աստուծոյ մատուսցեն։ Եւ զի ասացի նմանել Մովսիսի՝ մի ինչ անտեղի համարեսցի ոք. քանզի որ ետուն զքահանայութիւն մեզ առաքեալքն՝ զԱհարոն և զՄովսէս մեզ ցուցին. և այնպիսիք լեալք՝ ապա 'ի պաշտօնն մատչել հրամայեցին։ Իսկ եթէ մեք յօրինակացն այնց վերջացեալք եմք՝ այս զի յԱստուծոյ զհաւանեն լուաք, այլ զի զանձանց խնդրեմք և ոչ զՔրիստոսի. զի Քրիստոս և օրինացն նմանելոյն՝ չարաչար արքայութեանն արժանի մտից. և զայս ոչ առ քահանայս եւեթ օրինադրեաց, այլ հասարակաց ամենեցունց. քանզի ամենեցուն խմբեալ կուտիցն արանց և կանանց, որ յայնժամ մերձ էին՝ սկզբնաւորեաց զբանն. զի յայտ լիցի՝ թէ նոյն առ յա-

պա հաւատացելոց՝ այս կանոնեսցի սահմանս։ Եւ զինչ զոր ասացն. Եթէ ոչ առաւելուցու արդարութիւնն ձեր՝ քան զդպրացն և զփարիսեցւոցն՝ ոչ մտանէք յարքայութիւնն Աստուծոյ. և թէ առ բոլորս ասէ զայս, քանիօ՞ն է առ. քահանայսն առաւելութեան խնդիր։ Եւ յաւէտ յիրաւի. զի նոցա որ ըստ օրինացն էին քահանայք, անասնոց արեամբ քահանայագործութիւն էր. զի ստուերին էին պաշտօնեայք, զորոց ասէ Պաւղոս, թէ առակաւ օրինակաւ երկնաւորացն էր պաշտօն. իսկ որ շնորհացս և ճշմարտութեանս քահանայացան՝ Որդւոյն Աստուծոյ արեամբն սպասաւորել կարգեցան. և այս է զոր Պաւղոս երկնաւոր ասաց. և առակ սոցա և օրինակ լինել ասաց զհինն զամենայն։ Զի թէպէտ և յերկրի կատարի՝ այլ ոչ եթէ երկրային նուիրօք, այլ հացիւն՝ որ իջանէ յերկնից, և կեանս տայ աշխարհի. վասն որոյ և զանձեալ իսկ ասէ Պաւղոս երանելին, 'ի յիշել զօրինականն պատարագսն, թէ վասն որոյ հարկ էր օրինաւորացն այնպիսեօքն սրբել, և բուն իսկ երկնաւորացն՝ առաւել ևս պատարագօք քան զնոյնս։ Տեսանե՞ս, զի ոչ միայն զպատարագն երկնաւոր կոչէ, այլ և զմեզ՝ որք երկնաւոր պատարագին հաղորդեցաք։ Եւ դարձեալ ևս յայտնագոյնս՝ յորժամ ասէ. Եղբարք սուրբք, երկնաւոր կոչմանն բաժանորդք. և զերկնաւորն մատուցանեմք պատարագ։ Ապա կարի յոյժ առաւելուլ պարտիմք՝ քան որք 'ի հնումն ստուերապաշտօնեքն. զի որում շատ տուաւ՝ շատ խնդրի, Տէրն ասաց։ Վասն որոյ զկատարեալ առաքինութեանցն բուռն հարցուք 'ի կատարելութեանս. և զանձինս և զեշխեցեալսն ապրեցուսցուք, և զայլս բազումս։ Եւ հասարակաց ամենեցուն Տէրն Քրիստոս՝ հասարակաց օգնական լիցի յամենայնի, և զանուն իւր սուրբ փառաւորեսցէ 'ի մեզ՝ որում միշտ փառք. ամէն։

Համարձակեցայ առ այս յանդգնաբար՝ 'ի հարկէ, և ոչ զի անձին փառս ստացայց. այլ զի զեպիսկոպոսութիւն վիճակեցայ, և 'ի վիճակելն՝ տգիտութիւն 'ի յոլովմն վարկայ, և բանիւ ամենայն ումեք զբովանդակ զայս ծանուցանել՝ անհնար գիտացի, պատշաճ

համարեցայ 'ի գրի հարկանել. զի Թերևս այսպէս դիւրին առ ուսանել արարից կամողաց։ Յաղագս որոյ և որք հանդիպիցին այսոցիկ ընթերցութեան՝ աղօթս վասն մեր փրկութեան արասցեն, սուղ աշխատութեանս փոխահատոյց լինել առ 'ի Քրիստոսէ զնորա ողորմութեանցն պարգևս։ Որում լիցի ամենեցուն մեզ հանդիպել յերկրի և յերկինս, և փառս վերառաքել Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս։

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

Շնորհիւն Աստուծոյ եղև մեկնութիւն այսմ գրոց՝ 'ի ձեռն Խոսրովայ Անձևացեաց եպիսկոպոսի, յոյժ հետևողի պատուիրանացն Աստուծոյ. զոր մեզ և գովել անձահ է, զի մի գայթակղեսջիք 'ի նոյն, վասն գոլոյ նորուն հայր իմ ըստ մարմնոյ. որոյ չեմ արժանի կոչիլ որդի և ոչ վարձկան, ըստ գրեցելումն. այլ 'ի գրելոցդ լինիցին հասու խնդրողքն վասն նորա, որք սրտի մտօք ունկն դնիցեն. որք և աղօթիւք փոխադարձել պարտին ընդ տուիցելոյս. և հասարակացն տուօղն Աստուած և ձեզ հայցողացդ ձիրեսցէ զիւրականն պարգևս։ Այլ յոյժ ամաչեցեալ և տարակոյս գտանիմ ես Գրիգոր, պարտաւոր պատուիրանաց սուրբ գրոց։

Արդ առաջին սուրբ գրոցս այսորիկ գծագրութիւն՝ եղև ձեռամբ Սահակայ որդւոյ տեառն Խոսրովու՝ սոյն սուրբ գրոցս մեկնողի, յերեք հարիւր իններսուն և ինն թուականութեանս Հայոց։

խնամօք զմեօք շուրջ լեցիս, և 'ի գայլոյն պահեսցես,
և 'ի մահացու արօտէ հեռի արածեսցես։ Եւ ո՞ւր լի֊
նիցի այն. յաջորդն յայտ առնէ։ «Հովուեա զմեզ
» յանդաստանի կամաց քոց սրբոց և բարեսիրաց».
քանզի կամք Քրիստոսի արդարութիւն և բարեգոր֊
ծութիւն է, զայն ասէ ճարակել արժանի արասցես.
այն է վայրն դալարուոյ զոր սաղմոսերգուն նուագէ.
այն է անդաստան՝ որ ըստ Քրիստոսի կամացն է,
անմոռանելի գայլուն, քաղաք որմեալ պատուիրանին
ամրութեամբ, որպէս և ասէ. «Որով ամրացեալք
յամենայն բանսարկուին ընդդիմութեանց». ընդդի֊
մութիւն բանսարկուին այն է՝ բարւոյն զչարն ընդ֊
դէմ դնել. խոնարհութեան՝ զհպարտութիւն, հեզու֊
թեան՝ զբարկութիւն, սիրոյն՝ զատելութիւն, պար֊
կեշտութեան՝ զագահութիւն, զգաստութեան՝ ըզ֊
պոռնկութիւն. նոյնպէս և այլոցն ուղղութեանց զհա֊
կառակ չարն ընդդիմադրել։ Ցայնցանէ ասէ ամրա֊
ցեալք՝ «Քումդ ևեթ արժանի եղիցուք լսել ձայնի. և
» քեզ միայն քաջայաղթ և ճշմարիտ հովուիդ հետե֊
» ւել»։ Զայն մաղթէ զլսելութիւն, զոր Տէրն ասէ,
Ոչխարք իմ ձայնի իմում լսեն, և ես ճանաչեմ զնոսա,
և զկնի իմ գան, և ես տամ նոցա զկեանս յաւիտենա֊
կանս. զսոյն աղօթիցն բան հայցէ, լսել ասէ զվարդա֊
պետութեան նորա զձայնն, և զկնի նորա երթալ։ Եւ
այս է զկնի երթալն. ուրանալ զանձն, և 'ի խաչ հպա֊
տակ միշտ կալ, և զայն ճանապարհ երթալ՝ զոր Տէրն
եցոյց, և ընդ անձուկն[1] մտանել և ընդ նեղն 'ի կեանսն,
և անդ առնուլ զայն՝ որ հայցէ բանիւն որ զհետ գայ։
«Եւ առ 'ի քէն ընդունել զպատրաստեալ տեղի յար֊
» քայութեան քում»։ Ըստ իւրաքանչիւր արժանաւո֊
րութեան պատրաստեալ լինին տեղիքն յարքայու֊
թեանն Քրիստոսի, յորժամ լուծանէ զթագաւորու֊
թիւնս, և միայն թագաւորութիւն նորա կայ և մնայ
յաւիտեան։ Զայն օթևանս խնդրէ աղօթիցս բան, և
յաւելու 'ի նոյն զպատճառս բարեգործութեան։ «Աս֊
» տուած մեր և Տէր մեր Յիսուս Քրիստոս». զի արա֊
րիչ ես, ասէ; և Տէր, որ և ազատեցեր զմեզ 'ի մեղաց,

1 Այլ ՕՕ. ընդարձակն։

և ընդ քով տէրութեամբդ արժանացուցեր լինել քոյով չարչարանօք, որով զանապականութիւն ընկալաք. և ոչ ըստ արարչութեանդ միայն տիրես մեզ, որպէս այլոց արարածոց, այլ զի և գնոց գնեցեր, զպատուական քո զարիւնդ փրկանս տուեալ: Վասն որոյ 'ի փառս տալն հանգուցանէ զբանն ասելով. «Որում վայելեն «փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և «յաւիտեանս»:

«Խաղաղութիւն ընդ ամենեսեան: Անքննելին, ան»հաս, երրեակ ինքնութեանդ, հաստիչ, ընդունօղ և »անբաժանելի միասնական սուրբ Երրորդութեանդ»: Անքննելին ասէ՝ վասն զի չանկանի և ոչ միով իւիք ընդ քննութեամբ. անհաս՝ վասն զի թէպէտ և յանդգնի ոք հասու լինել՝ ոչ կարէ գիտակ լինել Աստուծոյ էութեանն կամ մշտնջենաւորութեանն. երրեակ է՝ ըստ առանձնաւորութեան. զի Հայր է, և Որդի, և Հոգի սուրբ, որոշեալ դիմօք և միաւորեալ աստուածութեամբ. ինքնութիւն է՝ զի ոչ յումեքէ ունի զգոյութիւնն, այլ ինքնութեամբ է, որպէս սուրբ Լուսաւորիչն ասէ. Տէր Աստուած՝ որ նա միայն ինքնութեամբ, և ոչ ոք յառաջ քան զնա: Հաստիչ է՝ զի հաստատեաց զարարածս՝ յանգոյից գոյացուցեալ, և հաստատուն պահէ յիւրաքանչիւր կարգի: Ընդունօղ է՝ վասն զի ընդունի և խնամէ զբոլոր յինքենէ եղեալս[1], և պատրաստէ զիւրաքանչիւրոցն պէտս, ոչ միայն հրեշտակաց և մարդկան՝ այլ և ամենայն կենդանեաց. և բնաւ իսկ տայ գոյից զանձնիւր զարդ և զկացումն: Զերկինս անխոնարհելի պահէ և պայծառ՝ լուսաւորացն շրջագնացութեամբ. զերկիր՝ ունի անսասանելի, և վայելչացուցանէ զանազան բուսովք և տնկովք և սերմամբք, զոր և առոգէ անձրևածին ամպօք մինչև ցյագումն. այլ և զծով փակէ յիւրն սահմանի, զի մի յատակացն սուզանիցի, կամ եզերօքն սփռումն առնուցու՝ աւելի քան զչափն: Անբաժանելի է սուրբ Երրորդութիւնն, վասն զի թէ և առանձնաւորութեամբ բաժանեալ է սուրբ Երրորդութիւնն՝ այլ ըստ աստուածութեանն անբաժանելի է. մի է բնութիւն սուրբ Երրորդու-

1 Հին Օ. ելեալս:

*թեանն, մի է էութիւն, մի տէրութիւն, մի կամք, մի փառաւորութիւն։ Եւ նմա միայնոյ վայելէ երկրպագութիւն յամենայն գոյից. որպէս ասէ յետ այսորիկ. «Որում վայելէն փառք, իշխանութիւն և պատիւ. » այժմ և միշտ և յաւիտեանս»։*

## ՅՈՐԴՈՐԱԿ [1]

*Շնորհիւն Աստուծոյ յայտնաբանութիւն արարեալ եկեղեցական կարգադրութեանց՝ ըստ իւրաքանչիւր ժամուց՝ 'ի կատարումն հասուցաք. ոչ որչափ ունէր խորհրդածութիւն քարոզացն և աղօթիցն բանք, այլ որչափ հասողութիւն մեր բաւեաց՝ համառօտեցաք։ Եւ թէպէտ և բազում են եկեղեցականացն կարգաց զանազանութիւնք, քարոզաց և աղօթից և պատարագամատուցաց, և են որք ըստ մարտիրոսաց յիշատակի, և են որք ըստ տէրունական տօնից, ծննդեանն և յարութեանն, և է որ շնորհատրութիւն կարգեալք. այսինքն՝ 'ի մկրտութիւն, 'ի ձեռնադրութիւն և յօրհնութիւն պսակի, և 'ի թաղումն մեռելոց, և 'ի սեղան հաստատել, և սպաս եկեղեցւոյ օրհնել, և զջուր սըրբել 'ի յայտնութեան Տեառն, և խաչ օրհնել, և 'ի յօրհնել զսերմն, զկալ, զգուարակ, զաղ, զհատ, և որ այլ ևս են շնորհաբաշխութիւնք, և որ վասն Ճանապարհորդաց և հիւանդաց, և վասն այլ ինչ սոյնպիսեաց, զորս բովանդակ բան առ բան ընդ քննութե̃ արկանել, ոչ միայն մեզ գրելոյն չլինէաք հանդուրժօղ, այլ և ոչ ընթերցօղքն՝ լսելութեան։ Բայց եթէ հաստատութեամբ ոք միտ դնէ այսոցիկ՝ որ ասացանս, բաւականապէս առ այլսն ամենեսին միտս տանայ։ Եւ զինչ ասեմք թէ ամենեքումբք գրիցելովքս առ բովանդակ թողեալսն կարողանայ իմաստից, այլ թէ և մասին ինչ 'ի սոցանէ հասանէ մտաց՝ բաւականանայ առ ամենայն լրումն եկեղեցական կարգաւորութեանց։*

*Վասն որոյ աղաչեմ՝ մի՛ վարկպարագի գործ համարել զմտածութիւն աստուածեղէն բանից, մանաւանդ*

[1] Չիք 'ի բնագրին խորագիրդ, որպէս և ոչ զկնի՝ Յիշատակարան։

զքարոզութեանց և զաղօթից, զորմէ մեր փրկութիւն կախեալ կայ. և ոչ միայն մերն՝ այլ և որոց մեք պարտապան իցեմք, եթէ կենդանեաց և եթէ մեռելոց: Զի ոչ եթէ լեզու որ ընդ օդն բախին՝ առանց մտացն զհետ երթալոյ՝ օգուտ ինչ գործէ. զի սրտագէտն Աստուած 'ի սիրտն և 'ի միտսն և ոչ 'ի բերանն հայի: Վասն որոյ արթուն մտօք և անզբաղ խորհրդով և կատարեալիմաստ հոգւով՝ զաղօթսն հաստուսցուք Աստուծոյ, զի զմեզ և զայլս օգտեցուսցուք. և մեք յայլոցն աղօթից՝ շահեալ լիցուք: Քանզի թէ սրտի 'մտօք վասն ամենայն հաւատացելոց աղօթս արասցուք՝ 'ի բոլոր աղօթից հաւատացելոց օգուտ մեզ արասցուք. քանզի որով չափով չափեմք՝ չափեալ մեզ լինի: Յաղագս որոյ նախ անձինս՝ ապա այլոց ամենեցունց տամ զգուշութիւն, հոգ անձին ունել, և յԱստուծոյ օգնութիւն հայցել, զի կարասցուք ըստ հաճոյիցն Աստուծոյ մատուցանել նմա զաղօթս մեր:

Եւս առաւել զգուշալի է առաջնորդաց եկեղեցւոյ, որք փոխանակ բովանդակ եկեղեցւոյ՝ զձեռս առ Աստուած ամբառնան, և զամենեցուն հայցուածս՝ Աստուծոյ պատգամաւորեն:

Որոց հարկ է՝ զի այնպիսի վարս ստանայցեն, որ համարձակութիւն տացեն նոցա առ աստուածխօսութիւն. զի որպէս Մովսէսն՝ յԱստուծոյ տեսութիւնն՝ ոգւովքն արժանասցին, և որպէս երեւմամբ՝ օգնական իւրեանց աղօթիցն զնախագնաց զսուրբսն ունիցին, և նոքօք զժողովրդոցն պատգամս՝ Աստուծոյ մատուսցեն: Եւ զի ասացի նմանել Մովսիսի՝ մի՛ ինչ անտեղի համարեսցի ոք. քանզի որ ետուն զքահանայութիւն մեզ առաքեալքն՝ զԱհարոն և զՄովսէս մեզ ցուցին. և այնպիսիք լեալք՝ ապա 'ի պաշտօնն մատչել հրամայեցին: Իսկ եթէ մեք յօրինակացն այնց վերջացեալք եմք՝ այս զի յԱստուծոյ զհաւանեն լուաք, այլ զի զանձանց խնդրեմք և ոչ զՔրիստոսի. զի Քրիստոս և օրինացն նմանելոյն՝ չարար արքայութեանն արժանի մտից. և զայս ոչ առ քահանայս և եթ օրինադրեաց, այլ հասարակաց ամենեցունց. քանզի ամենեցուն խմբեալ կուտիցն արանց և կանանց, որ յայնժամ մերձ էին՝ սկզբնաւորեաց զբանն. զի յայտ լիցի՝ թէ նոյն առ յա-

պա հաւատացելոց՝ այս կանոնեսցի սահմանս։ Եւ զի՞նչ զոր ասացն. Եթէ ոչ առաւելուցու արդարութիւնն ձեր՝ քան զդպրացն և զփարիսեցւոցն՝ ոչ մտանիջէք յարքայութիւն Աստուծոյ. և թէ առ բոլորս ասէ զայս, քանի՞ն է առ. քահանայսն առաւելութեան խնդիր։ Եւ յաւէտ յիրաւի. զի նոցա որ ըստ օրինացն էին քահանայք, անասնոց արեամբ քահանայագործութիւն էր. զի ստուերին էին պաշտօնեայք, զորոց ասէ Պաւղոս, թէ առակաւ օրինակաւ երկնաւորացն էր պաշտօն. իսկ որ շնորհացս և ճշմարտութեանս քահանայացամն՝ Որդւոյն Աստուծոյ արեանն սպասաւորել կարգեցան. և այս է զոր Պաւղոս երկնաւոր ասաց. և առակ սոցա և օրինակ լինել ասաց զհինն զամենայն։ Զի թէպէտ և յերկրի կատարի՝ այլ ոչ եթէ երկրային նուիրօք, այլ հացիւն՝ որ իջանէ յերկնից, և կեանս տայ աշխարհի. վասն որոյ և դարձեալ իսկ ասէ Պաւղոս երանելին, 'ի յիշել զօրինակաւն պատարագսն, թէ վասն որոյ հարկ էր օրինաւորացն այնպիսեօքն սրբիլ, և բուն իսկ երկնաւորացն՝ առաւել ևս պատարագօք քան զնոյնս։ Տեսանէ՞ս, զի ոչ միայն զպատարագն երկնաւոր կոչէ, այլ և զմեզ՝ որք երկնաւոր պատարագին հաղորդեցաք։ Եւ դարձեալ ևս յայտնագոյնս՝ յորժամ ասէ. Եղբարք սուրբք, երկնաւոր կոչմանն բաժանորդք. և զերկնաւորն մատուցանեմք պատարագ։ Արդ կարի յոյժ առաւելոյ պարտիմք՝ քան որք 'ի հնումն ստուերապաշտօնէքն. զի որում շատ տուաւ՝ շատ խնդրի, Տէրն ասաց։ Վասն որոյ զկատարեալ առաքինութեանցն բուռն հարցուք 'ի կատարելութեանս. և զանձինս և զերախտեցեալսն ապրեցուսցուք, և զայլս բազումս։ Եւ հասարակաց ամենեցուն Տէրն Քրիստոս՝ հասարակաց օգնական լիցի յամենայնի, և զանուն իւր սուրբ փառաւորեսցէ 'ի մեզ՝ որում միշտ փառք. ամէն։

Համարձակեցայ առ այս յանդգնաբար՝ 'ի հարկէ, և ոչ զի անձին փառս ստացայց. այլ զի զեպիսկոպոսութիւն վիճակեցայ, և 'ի վիճակելն՝ տգիտութիւն 'ի յլռովմն վարկայ, և բանիւ ամենայն ումեք զբովանդակ զայս ծանուցանել՝ անհնար գիտացի, պատշաճ

համարեցայ 'ի գրի հարկանել. զի թերևս այսպէս դիւրին առ ուսանել արարից կամողաց: Յաղագս որոյ և որք հանդիպեսցին այսոցիկ լսելութեան՝ աղօթս վասն մեր փրկութեան արասցեն, սուղ աշխատութեանս փոխահատոյց լինել առ 'ի Քրիստոսէ զնորա ողորմութեանցն պարգևս: Որում լիցի ամենեցուն մեզ հանդիպել յերկրի և յերկինս, և փառս վերառաքել Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս:

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

Շնորհիւն Աստուծոյ եղև մեկնութիւն այսմ գրոց՝ 'ի ձեռն Խոսրովայ Անձևացեաց եպիսկոպոսի, յոյժ հետևողի պատուիրանացն Աստուծոյ. զոր մեզ և գովել անձառ է, զի մի՛ գայթակղեսջիք 'ի նոյն, վասն գոլոյ նորուն հայր իմ ըստ մարմնոյ. որոյ չեմ արժանի կոչիլ որդի և ոչ վարձկան, ըստ գրեցելումն. այլ 'ի գրելոցդ լինիցին հասու խնդրողքն վասն նորա, որք սրտի մտօք ունկն դնիցեն. որք և աղօթիւք փոխադարձել պարտին ընդ տուիցելոյս. և հասարակացն տուօղն Աստուած և ձեզ հայցողացդ ձիրեսցէ զիւրականն պարգև: Այլ յոյժ ամաչեցեալ և տարակոյս գտանիմ ես Գրիգոր, պարտաւոր պատուիրանաց սուրբ գրոց:

Արդ առաջին սուրբ գրոցս այսորիկ գծագրութիւն՝ եղև ձեռամբ Սահակայ որդւոյ տեառն Խոսրովու՝ սոյն սուրբ գրոցս մեկնողի, յերեք հարիւր իննսուն և ինն թուականութեանս Հայոց:

---

